

# ԼԵՆԻՆՅԱՆ ՄՐՑԱՆԱԿ

Երկու տարին մեկ, ապրիլի 22-ին՝ Վլադիմիր Իլյիչի ծննդյան օրը, հրապարակվում են գիտության ու տեխնիկայի բնագավառի 25 և արվեստի, գրականության ու ճարտարապետության ասպարեզի 5 դափնեկիրների անուններն ու այն աշխատանքները, որոնք արժանանում են մեր ժամանակի ամենաուհեղինակավոր մրցանակներից մեկին՝ լենինյան մրցանակին:

Ըստ կանոնադրության լենինյան մրցանակի արժանացած գիտնականը կամ արվեստագետը երկրորդ անգամ չի ներկայացվում նույն մրցանակին, որքան էլ որ մեծ լինի նրա հաջորդ աշխատանքի արժեքը:



## ՄՍՏԻՍԼԱՎ ԿԵԼԴԻՇ

Համաշխարհային գիտության նոր դարաշրջանի ասողերից է մեր ժամանակների խոշոր մաթեմատիկոս, տիեզերագնացության մեծ տեսաբան Մստիսլավ Կելդիշը:

Դեռևս 40-ական թվականներին մեր երկրի ամենաերիտասարդ՝ 35-ամյա ակադեմիկոսը հայացքը հառել էր տիեզերքի հեռուներին, չմոռանալով նաև մեր կյանքի մյուս բնագավառները: Նրա կողմից առաջադրվել և վճռվել են ավիացիային, ծովային ու ատոմային տեխնիկային վերաբերող դժվարագույն մաթեմատիկական խնդիրներ:

Ոմանք շատ են սիրում մաթեմատիկական բանաձևերի համար օգտագործել «չոր», «վերացական» բառերը: Սակայն այս ձևակերպումները բնավ չեն վերաբերում Կելդիշի գրչին պատկանող գիտական աշխատություններին: Մոտ 15—20 տարի առաջ, նույնիսկ հեղինակավոր գիտական շրջաններում պարմանքով ու կասկածանքով էին նայում հեռուկում ոչ մեծ խորությամբ շարժվող թևերի տեսության վերաբերյալ Կելդիշի աշխատանքներին: «Թևերը հեղուկի տա՞կ, ինչի՞ համար,— սկեպտիկորեն թոթվում էին ուսները,— որպեսզի հակառակ ջրի մեջ ընկած ինքնաթիռի վա՞րքը»: Այսօր այդ կապված հարուցող բանաձևերի արդյունքը ստորջրյա թևեր ունեցող արագընթաց նավերն են:

Կելդիշի բոլոր աշխատանքները հայար թելերով կապված են կյանքին, ընխում են մեր երկրի հրատապ պահանջներից, կիրառվում են կյանքում: Կելդիշի յուրաքանչյուր հայտնագործություն իրավամբ գիտական գյուտ է համարվում:

Նա պարգևատրվել է Ցիոլկովսկու և Լոմոնոսովի անվան ոսկե մեդալներով, արժանացել է լենինյան (1957 թ.) ու պետական մրցանակների:

Կելդիշը մեկն է այն եզակիներից, որոնց կրծքին շողշողում է սոցիալիստական աշխատանքի հերոսի երեք ոսկե աստղ:

ԱՐՄԵՆ ՀԱՄԲԱՐՅԱՆ

## ԳԱՐՆԱՆ ԱՆՁՐԵՎ

ԶԱՎԵՆ ԿԱՍՅԱՆ

*Քնից զարթնած տաք հողից*
*Ծաղկի բույր է բարձրանում,*
*Թուխ ամպերը գնալով*
*Ավելի են թանձրանում...*
*Այս ի՞նչ եղավ, չորս կողմից*
*Առուներ են գիլ վազում,*
*Գարնան լեզվով իրար հետ*
*Անուշ-անուշ զրուցում...*

*Ու ծիածանն է հանկարծ*
*Կապում կամար մի թովիչ.*
*Հորդ անձրևն է դադարում,*
*Խաղաղվում է ամեն ինչ...*
*Փչում է մեղմ, զով քամին,*
*Թուփ ու սեզերն են դողում,*
*Ծաղիկների թերթերին*
*Մարգարիտներ են շողում...*



# ՊԱՏԱՆԻ ԼԵՆԻՆԻ ՆԿԱՐԻ ԱՌԱՋ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

ԱՉՔԵՐԸ՝ ԽՈՀՈՒՆ, ՁԵՌՔԸ՝ ՍՐՏԻՆ,
ԼՑՎԱԾ ՓՐԿԱՐԱՐ ՄԻ ՂՈՂԱՆՋՈՎ,
ՋԱՀԵԼՈՒԹՅԱՆ ՊԵՍ ՀՈՂԱԳՆԴԻ,
ԳՆՈՒՄ Է ԱՀԱ ԳԱՐՆԱՆ ՄԻՋՈՎ։

ՈՐՈՏՆ Է ԼՍՈՒՄ ՆԱ ԱՄՊԵՐԻ,
ԳԵՏԵՐԻ ՀՈՐՁԱՆՔՆ ԱԼԵԾԱԾԱՆ,
ԹԵՎԵՐԻ ԲԱԽՈՒՄՆ ԱՐԾԻՎՆԵՐԻ
ԵՎ ԲՈՂԲՈՋՆԵՐԻ ՊԱՅԹՅՈՒՆՆ ԱՆՁԱՅՆ։

ՆԱՅՈՒՄ Է ԲԱՑՎՈՂ ԱՐՇԱԼՈՒՅՍԻՆ,
ՏԵՍՆՈՒՄ Է ԳՆԴԵՐ ՈՒ ԲԱՆԱԿՆԵՐ,
ԳՆՈՒՄ Է ԱԿՈՒՆՔՆ ԻՐ ԵՐԱԶԻ,
ԳՆՈՒՄ Է ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐ։

ԳՆՈՒՄ Է ՀՊԱՐՏ ՈՒ ՎԵՀԱՏԵՍ,
ԴԵՊԻ ԲԱՐՁՈՒՆՔԸ ԱՊԱԳԱՅԻ,
ԻՆՔԸ՝ ՄԻՇՏ ՋԱՀԵԼ ԻՐ ՄՏՔԻ ՊԵՍ,
ԻՆՔԸ՝ ՄԻՇՏ ՊԱՅԾԱՌ ՈՒ ՄԱՐԴԿԱՅԻՆ։

Շվեյցարիայի Ժամամև քաղաքում աշխարհահռչակ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսը մի անգամ այցելում է ժամացույցների մի հսկայական ցուցահանդես, ուր ցուցադրվում էին մինչ այդ աշխարհում արտադրված 107 842 001 տեսակի ժամացույց և բոլորն էլ աշխատում էին, լարած էին, և ցուցահանդեսի կամարների տակ միլիոնավոր ժամացույցների համաչափ տիկ-տակներից այնպիսի մի թնդյուն էր առաջացել, որ շատերը չէին դիմանում, ականջները փակած դուրս էին փախչում:

Մեծ ճանապարհորդը, որին խորթ չէր նաև ոտքով ճամփորդելը, պատմում էր, թե երբ ցուցահանդեսի բոլոր սրահները դիտելով անցել էր՝ ոտքերը հոգնածությունից այլևս չէին դիմանում, այնքան բազմաթիվ էին հարկաբաժինները:

Ցուցահանդեսը դիտելուց հետո մեծ ճանապարհորդը մոտենում է ցուցահանդեսի տնօրեն պարոն Տիկ-Տակին և ասում.

— Այս ամենը, ինչ խոսք, շատ հետաքրքիր է: Ես սիրով դիտեցի ժամացույցների ձեր հավաքածուն: Բայց ափսոս, որ այստեղ ես չտեսա պի-մեզոնային ոչ մի ժամացույց:

Պարոն Տիկ-Տակը համոզված էր, որ ինքը ցուցադրում է աշխարհում արտադրված բոլոր տեսակի ժամացույցները, որ չկա մի ժամացույց, որն այդ վայրկյանին իր տիկ-տակը չանի ցուցահանդեսի սրահներում:

— Ներեցեք,— ասում է նա,— դա ի՞նչ բան է: Ավազի ժամացույց, արևի, ջրի, քամու, ճոճանակավոր ու ամեն կարգի ու տեսակի ժամացույցներ ես տեսել եմ և ունեմ: Բայց, ներեցեք, պի-մեզոնային ժամացույց... կյանքում բնավ չեմ տեսել և այդ մասին էլ լսում եմ առաջին անգամ:

Մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսը այդ խոսքի վրա ներողամտորեն ժպտում է ու ասում.

— Պարոն Տիկ-Տակ, պի-մեզոնային ժամացույց դուք չէիք էլ կարող տեսնել, բայց այդ մասին դուք այժմ կարող եք լսել ինձանից: Ես ժամանակ չունեմ, բայց ինչ արած: Ուրեմն, լսեցե՛ք...

Եվ նա սկսում է պատմել այդ զարմանալի ժամացույցի մասին, ապշեցնելով պարոն Տիկ-Տակին: Վերարտադրենք այդ պատմությունը, առանց մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսի խոսքին հատուկ պատկերավորության և ցնցող մանրամասնությունների:




Պի-մեզոնային ժամացույցներ կոչվածը բավականին բարդ, գիտական ու տեխնիկական բավականին խրթին օրենքներով արարված մի չափիչ գործիք է: Պի-մեզոնային ժամացույցը կարելի է համեմատել ավազե ժամացույցի հետ, միայն այն տարբերությամբ, որ այստեղ ավազի փոխարեն գործում է տարրական մասնիկների՝ պի-մեզոնների հոսքը:

Պետք է ասել, որ ավելի քան երկու հազարամյակ գիտնականները համոզված էին, թե նյութի ամենափոքր մասնիկը՝ ատոմն, անբաժանելի է: Հենց հունական ատոմոս բառը նշանակում է՝ անբաժանելի մասնիկ: Այժմ ամեն դպրոցական գիտի, որ ատոմը ոչ թե անբաժանելի է, այլ իր հերթին բարդ մի կառուցվածք է, բաղկացած միջուկից և նրա շուրջը պտտվող էլեկտրոններից, իսկ միջուկն էլ իր հերթին բաղկացած է այլ մասնիկներից:

Ճիշտ է, նույն ձևով այժմ գիտնականները հակված են կարծելու, որ միջուկի մասնիկները նույնպես անբաժանելի են, բայց ով գիտե, գուցե կգա ժամանակ, երբ ամեն դպրոցական կիմանա, թե



ինչից է բաղկացած տարրական մասնիկը, մինչդեռ այժմ ամենամեծ գիտնականներն անգամ այդ մասին ոչինչ հավաստի ասել չեն կարող:

Ինչ որ է, չշեղվենք:

Պի-մեզոնային ժամացույցի հեղինակն է Անգլիայի Օքսդորտ քաղաքի հինավուրց համալսարանի պրոֆեսոր՝ ֆիզիկոս-քիմիկոս-հրապարակախոս-ակրոստիքոս պարոն Պրոտոն Ֆոտոնսոնը, որին մեծ ճանապարհորդը հանդիպել է հենց իր հայրենիք Անգլիայում:

Շատ երկար են զրուցել նրանք՝ ճեմելով համալսարանի մերձակա պուրակներում: Պարոն Պրոտոն Ֆոտոնսոնը մեծ ճանապարհորդին բացատրել է իր ժամացույցի մի առանձնահատկությունը, որ չունեն աշխարհի մնացած բոլոր ժամացույցները: Նրա ժամացույցով պարզվում է, որ ժամանակի ընթացքը կարելի է համաչափեցնել մարդու ներքին՝ կենսական ռիթմին, արագացնելով կամ դանդաղեցնելով նրա ընթացքը՝ ըստ ցանկության: Այդ ընթացքն անսահման մեծացնելով, պարզվում է, որ մարդու մարմնին կարելի է տալ այնքան մեծ չափեր, որ նա դուրս գալով արեգակնային մեր համակարգից ու այնուհետև շարունակելով մեծանալ՝ դուրս կգա նաև մեր տիեզերքի սահմաններից, այնպես, որ գալակտիկաները նրա աչքին կսկսեն երևալ փոշու հատիկների չափ:

Նախ բացատրենք, որ մարդը այդչափ մեծանալով՝ կչքանա մեր աչքից, կդառնա անտեսանելի: Այստեղ պարադոքս չկա, այո, ոչ միայն փոքրանալով, այլև մեծանալով նույնպես, մարդը կարող է չքանալ մեր աչքից, դառնալ անտեսանելի:

Մենք գիտենք, որ նյութը՝ մատերիան բաղկացած է մոլեկուլներից, մոլեկուլը՝ ատոմներից, ատոմը՝ ինչպես արդեն ասացինք՝ պրոտոններից, նեյտրոններից, պոզիտրոններից, ֆոտոններից, էլեկտրոններից, տարրական մասնիկներից և այլն: Որքան էլ մոտ են մոլեկուլները կամ մյուս մասնիկներն իրար, այնուամենայնիվ, եթե հնարավոր լիներ նյութը կամ, ասենք, հենց մարդու մարմինը դիտել անսահմանորեն խոշորացնող մանրադիտակով, ապա կտեսնենք, որ մոլեկուլները կամ մասնիկները, որոնցից կազմված է մարդու մարմինը, իրականում գտնվում են (համեմատական կարգով, իհարկե) միմյանցից հսկայական հեռավորության վրա: Այսպես, ուրեմն, եթե հնարավոր լիներ մարդուն խոշորացնել տիեզերքի չափ, ապա այն մոլեկուլները կամ ատոմներն ու մասնիկները, որոնցից կազմված է նրա մարմինը, միմյանցից կլինեն այնքան հեռու, որքան աստղերը, մոլորակները և երկնային այլ մարմինները տիեզերքում:

Այսպես պայմանականորեն խոշորացված մարդու միջով ազատորեն կարող են թռչել-անցնել տիեզերանավեր, գիսաստղեր, երկնաքարեր՝ առանց որևէ խոչընդոտի հանդիպելու, ճիշտ այնպես, ինչպես ամեն վայրկյան մեր միջով թռչում-անցնում են տիեզերքի խորքերից եկող տարրական մասնիկները՝ առանց մեր մարմնի մոլեկուլներից որևէ մեկին հանդիպելու: Այդ մասնիկների փոքր չափերի համեմատ մեր մարմինը անսահմանորեն նոսր, ամենանոսր գազից էլ նոսր մի միջավայր է, համարյա լրիվ թափանցիկ:

Այժմ, կարծեմ, պետք է որ պարզ լինի, թե ինչու մարդուն անսահմանորեն խոշորացնելով՝ նա կարող է չքանալ աչքից, վերանալ, դառնալ անտեսանելի:

Եթե պի-մեզոնային ժամացույցի օգնությամբ, ընդհակառակը, դանդաղեցվի մարդու կենսական ռիթմը և ուղղվի հակառակ ուղղությամբ, ապա մարդը կսկսի ետ աճել, մի տեսակ նախ կջահելանա, կմանկանա, ապա կհասնի սաղմնային վիճակի, էլ ավելի փոքրացնելով կարելի է հասցնել նախասաղմնային և ապա միատոմային գոյության, ի վերջո՝ պի-մեզոնային վիճակի (այստեղից էլ՝ ժամացույցի անվանումը):

Մարդու կենսական պրոցեսն արագացնող պի-մեզոնային ժամացույցը կոչվում է դրական, իսկ կենսական պրոցեսը դանդաղեցնողը՝ բացասական:

Պարոն Պրոտոն Ֆոտոնսոնը աշխարհահռչակ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսին, որպես գաղտնիք հայտնել է, որ ըստ էության գոյություն ունի նաև կեղծ մասնիկներով գործող ժամացույց: Կեղծ թվերի գաղափարը մաթեմատիկայում կա, ամեն դպրոցական գիտի դա, մինչդեռ կեղծ նյութի մասին առայժմ ֆիզիկայում ոչ ոք չի արտահայտվել, բացի պրոֆեսոր Պրոտոն Ֆոտոնսոնից: Պարոն պրոֆեսորը պնդում է, որ կեղծ նյութերը կազմում են կեղծ տիեզերքներ, արեգակներ, մոլորակներ և այդ կեղծ մոլորակների վրա կարող են լինել կեղծ հիմնարկներ՝ իրենց կեղծ գիտնականներով և կեղծ գիտական հայտնագործություններով: Այդ կեղծ գիտնականների գոյությունը պարոն Պրոտոն Ֆոտոնսոնը միանգամայն հավաստի է համարում և արդեն նրանց կնքել է Սուտլիկուս-գիտնականուս լատինական անունով:

Մերձօքսդորտյան պուրակում զբոսնելով, պրոֆեսորն առաջարկում է հենց իր՝ աշխարհահռչակ մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսի վրա փորձարկել պի-մեզոնային ժամացույցը:

— Ես նախ կփորձարկեմ բացասական պի-մեզոնային ժամացույցը, և դուք ըստ ձեր ընտրության, կարող եք ընկնել ձեր անցյալը՝ ցանկացած տարիքում:

Երկար խորհելուց հետո մեծ ճանապարհորդն ասում է.

— Օ քե՛յ: Ես համաձայն եմ ընկնել իմ անցյալը, երբ ես երեք տարեկան էի: Մի հարց եմ ուզում պարզել՝ այդ տարիքում ես տա՞սն ատամ ունեի բոլոր երեխաների նման, ինչպես պնդում է մայրս, թե՞ տասնվեց ատամ, ինչպես համոզված եմ ես:

Պրոֆեսորը նախազգուշացնում է.

— Հարկ է, որ իմանաք, թե ինչ է կատարվելու ձեզ հետ: Ժամացույցի օգնությամբ ես ձեր կենսական անիվն կտամ հակադարձ կամ բացասական շարժում, և դուք ետ անելով՝ կսկսեք փոքրանալ, զգուշացնում եմ, որ չվախենաք: Դե, ուրեմն, ըսկըսեցինք:

Այս ասելուց հետո նա գործարկում է ժամացույցը և մեծ ճանապարհորդը զգում է, որ ինքը փոքրանալով՝ ահա երեք տարեկան մի մանչուկ է, կանգնած պրոֆեսորի կողքին: Նա դրանից, իհարկե, ո՛չ վախեցավ և ո՛չ էլ զարմացավ, մեծ ճանապարհորդներին վայել չէ նման հասարակ բաներով զարմանալը,* նա միայն ձեռքն արագ տարավ բերանը, հաշվեց ատամները, որոնք, ի դեպ, իրոք, տասնվեց հատ էին, ապա նշան արեց պրոֆեսորին, որ ինքն իր անելիքն ավարտել է, կարող է նա կրկին իրեն մեծացնել: Պրոֆեսորը նրան կրկին մեծացրեց, և նրանք ձեռքները ետևին դրած՝ վերսկսեցին երթևեկել մերձօքսդորտյան պուրակում:

— Ես կարող էի ձեզ ավելի փոքրացնել,— ասաց պրո՛ֆեսորը,— կհասցնեի սաղմնային, ապա հերթականությամբ՝ նախասաղմնային, ատոմային և ի վերջո պի-մեզոնային վիճակի: Պի-մեզոնային վիճակի հասնելով՝ դուք կարող էիք ընկնել ահա պաղպաղակի այս կաթիլի մեջ, որը ընկել է մեր ճանապարհի վրա այն մանչուկի պաղպաղակից:

— Իսկ մի՞թե այդքան հետաքրքիր է պաղպաղակի մեջ ընկնելը՝ փոշու հատիկից էլ փոքր մարդ դարձած,— ասաց մեծ ճանապարհորդը:

— Անշուշտ: Դուք կլինեք պի-մեզոնի չափ փոքր և կնկատեք, որ այս կաթիլը մի տիեզերքի չափ մեծ է: Այս ամենից դուք կարող եք հետևեցնել, որ թերևս մեր տիեզերքը մի պաղպաղակի կաթիլ է՝ ընկած որևէ մոլորակի որևէ քաղաքի որևէ պուրակի որևէ ծառուղում:

— Ի՞նչ մոլորակի մասին եք խոսում, պրոֆեսո՛ր:

— Պաղպաղակի այս կաթիլ-տիեզերքի որևէ ատոմի համակարգում պտտվող որևէ էլեկտրոն, ձեր՝ տարրական մասնիկի չափ դարձած մարդու համար, մոլորակի չափ մի մարմին պիտի լիներ:

— Իսկ ավելի կոնկրե՞տ:

— Ժամացույցի վրա կա հատուկ համարանք, որի միջոցով ես կա՛րող եմ պաղպաղակային այդ տիեզերքի անթիվ-անհաշիվ մոլորակներից ընտրել այն մեկը, որը ամեն ինչով կրկնի մեր Երկիր մոլորակին:

— Մեր մոլորակն անցել է զարգացման տարբեր փուլեր:

— Այո՛: Անթիվ-անսահման մոլորակներից կարելի է ընտրել այնպիսի մեկը, որը ճիշտ և ճիշտ համընկնի մեր Երկրին՝ նրա զարգացման տվյալ փուլի հետ, նրա գոյության հենց այս վայրկյանի մեջ, այն վայրկյանի, որում ապրում ենք մենք, ես և դուք այս պահին:

— Այս դեպքում կարելի է անել այնպես, որ այդ մոլորակի վրա ամեն ինչը մերի պես լինի: Ուրեմն, պետք է լինի նաև Օքսդորտ մի քաղաք, մերձակա մի պուրակ՝ ամեն ինչով այս պուրակի նման, ապա պետք է լինի այս ծառուղու նման մի ծառուղի, ուր ընկած պետք է լինի պաղպաղակի այս կաթիլին հար և նման մի կաթիլ, իսկ նրա մոտ կանգնած՝ ձեզ և ինձ հար ու նման երկու մարդ:

— Միանգամայն ճի՛շտ է,— բացականչեց պրոֆեսորը:— Անսահման թվով մոլորակներից կարելի է ընտրել ճիշտ և ճիշտ մերին նման մի մոլորակ, այսինքն, միևնույն է, թե՝ սա, և դուք կլինեք այդ մոլորակի վրա կանգնած, այսպիսի մի ծառուղում, այսպիսի մի կաթիլի կողքին, ինձ նման մի պրոֆեսորի հետ և կխոսեք այս կարգի ճամփորդության մասին, որի մասին խոսում ենք մենք այժմ:

Մեծ ճանապարհորդն իսկույն կռահեց մեծ գիտնականի միտքը.

— Գուցե ես արդեն հենց այդպիսի մի մոլորակի վրա եմ:

— Այո՛, ճիշտ այդպես: Խոսելու ընթացքում ես ձեզ փոքրացրի պի-մեզոնի չափ, դուք ընկաք այս պաղպաղակի կաթիլի մեջ, ես ընտրեցի մեր մոլորակի նման մի մոլորակ և այն, և այժմ մենք կանգնած ենք երկուսով այնտեղ՝ այն մոլորակի վրա, այսինքն՝ այստեղ: Մեր վերև շողշողացող այս արևն ու նրա շուրջ պտտվող մոլորակները փաստորեն այն պաղպաղակի կաթիլի մեջ գոյություն ունեցող մի արև ու համակարգ է: Այսինքն, այժմ մենք այդ պաղպաղակային տիեզերքի մեջ ենք:

— Իսկ դուք պարոն Պրոտոն Ֆոտոնսո՞նն եք, թե՞ նա մնաց այնտեղ:

— Նա մնաց այնտեղ, բայց քանի որ ես ամեն ինչով նա եմ, ուրեմն ես փաստորեն նաև նա եմ:

— Իսկ մերը, այն մյուսը, որի վրա մենք ըսկըսեցինք մեր զրույցը, կա՞:

— Անշուշտ կա: Սակայն այնտեղ կրկին վերադառնալու կարիք չկա, չէ՞ որ այստեղ ամեն ինչ նույնն է: Դուք ճանապարհորդությունից կվերադառնաք ձեր երկիրը, ձեր տունը, և ամեն ինչ կլինի նույնը, դուք կհամբուրվեք ձեր մոր հետ և դա ամեն ինչով կլինի ձեր մայրը, ինչպես ձեր այն մյուս մայրը, որ թողել եք այն մյուս երկրագնդի վրա:

Մեծ ճանապարհորդը լինելով փորձառու մարդ, աշխարհ տեսած, այս ամենից գլխապտույտ չունեցավ, ընդհակառակը, ամեն ինչ նա գիտականորեն ըմբռնեց:

— Դուք ելնում եք նրանից,— ասաց նա,— որ պաղպաղակային, չամչային կամ կարկանդակային տիեզերքներում երկրագնդի նման մոլորակներն անթիվ են, բայց կա անպայման գոնե մեկը՝ ամեն ինչով մեր մոլորակի նման. քաղաքներով, պատմություններով, մարդկանցով, ազգություններով և այլն: Հետևապես մեզ նման հար ու նման մարդիկ անթիվ են և նրանք այժմ ապրում են ցանկացած նյութի պրոտոնի մեջ:

— Այո՛, միայն թե պի-մեզոնի չափ փոքր են: Չնայած այդ փոքրությանը՝ նրանք ունեն մեր ուղեղի չափ զարգացած ուղեղ, և դրա վրա չպետք է զարմանալ. մատերիայի հատկությունները նույնպես անսահման են... Եվ ընդհակառակը, մեր ներկա տիեզերքը շատ հավանական է, որ ինչ-որ մի չամչի հատիկ է ինչ-որ մի տեղ ընկած:

— Նախ մի հարց պարզենք, պրոֆեսո՛ր: Պաղպաղակի այս կաթիլը կա այստեղ և այնտեղ: Այնտեղ ես ընկա այդ կաթիլի մեջ և հասա այստեղ, բայց այստեղ ահա ես կանգնած եմ հենց այդ կաթիլի կողքին և ոչ թե՝ մեջն ընկած եմ: Պարզվում է՝ ես ընկել եմ այդ կաթիլի մեջ և միաժամանակ չեմ ընկել: Բայց քանի որ դուք այն երկրի պրոֆեսորը չեք, այլ այս երկրի պրոֆեսոր եք, ուրեմըն, այնուամենայնիվ, ես ընկել եմ այն կաթիլի մեջ: Սպասեք, սկսում եմ խառնել... Դուք պրոֆեսոր Պրոտոն Ֆոտոնսոնը չե՞ք:

—՝ Ես Պրոտոն Ֆոտոնսոնն եմ, այո՛:

— Իսկ ո՞րը, նա՞, թե՞ սա:

— Նա չեմ, որովհետև նա մնաց այնտեղ, բայց նա եմ, որովհետև ամեն ինչով նա եմ: Մի՞թե չեք տեսնում: Նայե՛ք ձեր շուրջը, ամեն ինչ նույնը չէ՞ արդյոք:

Որոշ տեղ լուռ քայլելուց հետո, աշխարհահռչակ մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսն ասաց.

— Փաստորեն պի-մեզոնային ժամացույցի օգնությամբ ես կատարել եմ իմ ամենաանհավատալի ճամփորդություններից մեկը, և դա կատարվել է առանց տեղից շարժվելու, որովհետև ահա ես նույն տեղն եմ, սա Օբսդորտ քաղաքն է, երկիրը Անգլիան է և այլն, և այլն:



Նկ. ՌՈՒԲԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

— Հակառակ ճամփորդությունը կկատարվի այսպես, եթե կամենաք: Դրական պի-մեզոնային ժամացույցով ես ձեզ կխոշորացնեմ, խոշորանալով դուք կելնեք նախ արեգակնային համակարգից, ապա տիեզերքից, տիեզերքից դուրս գալուց հետո, այսպես ասած, եթե ետ նայեք, գուցե տեսնեք, որ մեր տիեզերք կոչվածը փաստորեն պաղպաղակի մի կաթիլ է, ասենք, կամ կարկանդակի մի կտոր՝ որևէ տեղ ընկած: Ուզո՞ւմ եք...

Պատմությունը մինչև վերջ լսելով՝ պարոն Տիկ-Տակը այլշահար սպասում էր և անհամբեր էր իմանալ, թե արդյոք մեծ ճանապարհորդը կատարե՞ց հակադարձ ճամփորդություն, թե՞ ոչ: Իհարկե, նա փափագում էր իմանալ՝ ինքը պարոն Տիկ-Տա՞կն է, թե՞ ինքը ևս պաղպաղակային տիեզերքի իր նմանակն է:

— Եվ դուք չկատարեցի՞ք այդ հակադարձ ճամփորդությունը,— հարցրեց նա:

— Ո՛չ,— ասաց մեծ ճանապարհորդը,— դրա կարիքը չկար: Ես մնացի պաղպաղակային տիեզերքում:

— Իսկ ե՞ս: Ո՞վ եմ հիմա ես: Ես ե՞ս եմ, թե՞ ես նա եմ:

— Դուք ևս պաղպաղակի կաթիլի մեջ եք:

— Իսկ իմ ժամացույցնե՞րը, ցուցահանդե՞սը:

— Ամեն ինչ նույնն է, նե՛րս մտեք ու համոզվեք:

— Տե՛ր աստված, մի՞թե ես պաղպաղակի կաթիլի մեջ եմ,— հառաչեց պարոն Տիկ-Տակը:

— Իսկ դուք չե՞ք լսել, որ մեր տիեզերքը անընդհատ ընդարձակվում է: Դա պաղպաղակի այն կաթիլն է, որ հոսում է, տարածվում է իր ընկած տեղում:

— Այնուամենայնիվ, ես պետք է ստուգեմ,— ասաց պարոն Տիկ-Տակն ու վազեց ցուցահանդես:

Տեսնելով, որ իր բոլոր 107 842 001 ժամացույցներն իրենց տեղում են և բոլորն էլ աշխատում են, ասաց.

— Գլուխը քարը, թե ես պաղպաղակային տիեզերքի մեջ եմ, թե ես նա չեմ, կարևորն այն է, որ իմ բոլոր ժամացույցները այստեղ են, աչքիս առաջ: Բայց...— մի բան մտածելով՝ ինքն իրեն ասաց պարոն Տիկ-Տակը, վերցրեց իր ժամացույցներից մեկը, մոտեցրեց լեզվին և համը տեսավ:

Ժամացույցից պաղպաղակի համ էր գալիս:

# ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑՈՒԹՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆ

**Տպագրում ենք պաշտոնական փաստաթղթերից, հաղորդագրություններից, հիշողություններից հատվածներ, որոնք պատկերացում կտան տիեզերական թռիչքների դարաշրջանի առաջին օրվա՝ հիշարժան 1961 թվականի ապրիլի 12-ի և առաջին տիեզերագնացի մասին:**

Սովետական Միությունում տարվող տիեզերական հետազոտությունների ընդարձակման կապակցությամբ գուցե անհրաժեշտ լինեն մարդիկ՝ գիտական նպատակներով տիեզերք թռչելու համար: Խնդրում եմ հաշվի առնել իմ ջերմ ցանկությունը և, եթե հնարավոր լինի, ուղարկել ինձ հատուկ պատրաստության:

ՅՈՒՐԻ ԳԱԳԱՐԻՆ

Գնդի հրամանատարությանը ուղարկված զեկույցից, 1959 թվականի հոկտեմբեր

1960 թվի գարնանը մենք՝ երիտասարդ օդաչու-կործանիչներս, եկանք Մոսկվա, որպեսզի սկսեինք տիեզերական թռիչքների համար պարապմունքները:

Սկզբում ապրում էինք Լենինի պողոտայի վրա: Ամուսնացածներին՝ Գագարինին և Պոպովիչին, բնակարաններ հատկացրին, իսկ մեզ՝ չամուսնացածներիս, հանրակացարանում տեղավորեցին: Մեր մեջ էլ գտնվեցին այնպիսիները, որոնք մտածելուց, տատանվելուց հետո, վճռեցին զորամաս վերադառնալ:

Բ. Վ. ՎՈԼԻՆՈՎ

Տիեզերագնաց-օդաչու

Պետք է ասել, որ ջոկատի կազմում հրաշալի տղաների էին ընտրել: Ես չեմ հիշում մի դեպք, երբ որևէ մեկը մյուսին վիրավորեր: Իսկ մենք վիճելի շատ հարցեր էինք ունենում, որոնք պահանջում էին անկողմնակալ քննարկումներ:

Ա. Ա. ԼԵՈՆՈՎ

Տիեզերագնաց-օդաչու

Հատկապես ես շատ էի հավանում ժպտուն, ամենատխուր իրավիճակում անգամ լավ տրամադրությունը չկորցնող Յուրի Գագարինին:

Յուրան առաջինն էր ամեն ինչում՝ և՛ բասկետբոլ խաղալիս, և՛ իր համար բոլորովին նոր գիտությունների յուրացման գործում, և՛ ավանի բարեկարգման աշխատանքին մասնակցելիս, և՛ սուր, բայց ոչ վիրավորական կատակներ անելիս: Հիշում եմ, թե նա վարպետ գնչուի խոսելաձևով ինչպես գուշակեց իմ ապագան.

— Քեզ, ջանի՛կս, սպասում է հեռավոր ճամփորդություն:

Ա. Գ. ՆԻԿՈԼԱՅԵՎ

Տիեզերագնաց-օդաչու

Կոսմոդրոմ մեկնելուց առաջ կայացած կուսակցական ժողովի օրակարգը կարճ ու կտրուկ էր. «Հայրենիքի հրամանը կատարելուն որքանո՞վ եմ պատրաստ»: Իրար հաջորդելով կանգնեցին իմ ընկեր-կոմունիստները, և յուրաքանչյուրը հակիրճ երդվեց, որ եթե ընտրությունն իր վրա կանգնի, պատվով կկատարի առաջադրանքը: Սակայն, մեզանից յուրաքանչյուրը մտածում էր. «Առաջինը Գագարինը կթռչի»:

Գ. Ս. ՏԻՏՈՎ

Տիեզերագնաց-օդաչու

Հասավ կոսմոդրոմ մեկնելու մասին կնոջը հաղորդելու ժամանակը և նա ի միջի այլոց նետեց.

— Պատրաստի՛ր սպիտակեղենի ճամպրուկը, թռչում եմ տիեզերք...

Այդ բառերում և՛ պարզություն կար, և՛ կատակ, և՛ Վալյայի նկատմամբ հոգատարություն: Չէր ուզում, որ կինը հուզվի, և այդպիսի կարևոր առաջադրանքի էր մեկնում այնպես, կարծես ամենասովորական գործուղման էր գնում:

Գ. Ս. ՇՈՆԻՆ

Տիեզերագնաց-օդաչու

Ես քայլում էի ցուրտ, բայց արդեն գարնան մոտիկությունն ապրող Մոսկվայում: Հազարավոր մարդիկ էին գնում Գորկու փողոցով, իմ առջևից, ետևից, հասնում ինձ: Նրանցից ոչ ոք, իհարկե, չգիտեր, որ հսկայական իրադարձություն է լինելու, որի նմանը դեռ պատմությունը չի իմացել: Ես կանգնեցի Կրեմլի պատի մոտ, մի անգամ էլ նայեցի Լենինի դամբարանին, իջա դեպի Մոսկվա գետը:

Հենց այդ գիշեր մենք թռանք Բայկոնուր:

Յու. Ա. ԳԱԳԱՐԻՆ

Տիեզերագնաց-օդաչու



Ես նայեցի նրան և մտքով ըմբռնեցի, որ վաղը այդ տղան կցնցի աշխարհը: Միաժամանակ ներքուստ ոչ մի կերպ չէի կարողանում վերջնականապես համոզել ինձ, որ վաղը կլինի այն, ինչ դեռ երբեք չի եղել, որ ավագ լեյտենանտը՝ մեր առջև նստած երիտասարդը, վաղը կդառնա նոր դարաշրջանի խորհրդանիշը:

Բ. ՎԻԿՏՈՐՈՎ
Պրոֆեսոր

Յուրահատուկ ապրումներ հիշողության մեջ չեն արձանագրվել: Բայց աչքիս առջև է, կարծես դա եղել է երեկ, խցիկի մուտքի մոտ կանգնած Յուրան ձեռքը թափահարեց, ասելով. «Մինչ մոտ հանդիպում», և այդ պահին հանկարծ հասկացա, որ դա փոքր չէ, որ հասավ երկար սպասված և երանավետ ժամը:

Գ. Ս. ՏԻՏՈՎ
Տիեզերագնաց-օդաչու

Չգիտեմ ինչու ինձ թվաց, որ այնտեղ, տիեզերանավում իմ ընկերը միայնակ է ու տխուր, և ես հարցրի.

— Յուրա, դու չե՞ս տխրում այդտեղ:

— Եթե երաժշտություն կա, կարելի է մի քիչ միացնել,— խնդրեց Գագարինը:

Հրամայվեց.

— Կայա՛ն... Երաժշտությո՛ւն տվեք նրան, երաժշտությո՛ւն տվեք նրան...

Մեկ րոպե անց հարցնում եմ.

— Դե, ինչպե՞ս, երաժշտություն տվի՞ն:

— Դեռ ոչ,— ուրախ կատակով ասաց Գագարինը,— բայց հուսով եմ, որ շուտով կլինի:

Սերգեյ Պավլովիչն էլ կատակով մեկնաբանեց.

— Հավանական է, ախր դրանք երաժիշտներն են, մինչ դես, մինչ դեն...

Նույն պահին Յուրան ասաց.

— Սիրո մասին են տվել: Լեոնիդ Ուտյոսովին եմ լսում:

— Սիրո մասի՞ն,— ծիծաղեց Սերգեյ Պավլովիչը:— Դա մատչելի է, Յո՛ւրի Ալեքսեևիչ:

Պ. Ռ. ՊՈՊՈՎԻՉ
Տիեզերագնաց-օդաչու

Թռիչքի տեխնիկական ղեկավարը հրամայեց.

— Բարձրանա՛լ:

Ես պատասխանեցի.

— Գը՛-նա՛-ցի՛նք:

Հայացքս գամվեց ժամացույցին: Սլաքները ցույց էին տալիս ժամը 9 անց 07 րոպե՝ Մոսկվայի ժամանակով: Ես սուլոց լսեցի և հետզհետե աճող աղմուկ, զգացի, ինչպես հսկա հրթիռը ցնցվեց իր ամբողջ իրանով և կամաց, շատ կամաց պոկվեց մեկնարկային հարմարանքից:

Յու. Ա. ԳԱԳԱՐԻՆ
Տիեզերագնաց-օդաչու

Հեռաչափողները զեկուցում են.

— Թռիչքը կանոնավոր է: Այրման խցերում ճնշումը կայուն է: Ամեն ինչ կարգին է:

Իսկ ի՞նչ է պատահել Յուրային: Ինչո՞ւ չի պատասխանում:

Եվ հանկարծ, կարծես ամեն ինչ իր հունով ընթացավ, բոլորովին հանգիստ հնչում է թանկագին, երկար սպասված ձայնը.

— Տեսնում եմ Երկիրը:— Եվ այնպես երգեցիկ ու երկարացված ձայնով, ինչպես ասել էր «գը՛-նա՛ցի՞նք» բառը, ասաց.— Ի՛նչ-պի՛-սի՛ գե՛-ղե՛ց-կո՛ւթ-յո՞ւն...

Նշանակում է, վտանգավոր ոչինչ չկա, պարզապես կապը ժամանակավորապես ընդհատվել էր: Այդ պահին (գուցե թվաց) Կորոլյովը իր ծանր բռունցքով սպառնաց կապավորներին:

Ս. ԳԱՎՐԻԼՈՎ
Ինժեներ

Ինչպես հետո պարզվեց, կապի գծերում ինչ-որ խափանում էր տեղի ունեցել: Այդ խափանումը տևեց ընդամենը մի քանի վայրկյան: Բայց այդպիսի խափանումները կրճատում են կոնստրուկտորի կյանքը:

Կ. Պ. ՖԵՈԿՏԻՍՏՈՎ
Տիեզերագնաց-օդաչու
տեխնիկական գիտությունների դոկտոր

Վաղ առավոտից ես աշխատում էի հողամասում, կարտոֆիլ էի ցանում: Ուզում էի արդեն թոռնիկիս տուն տանել, երբ լսեցի նրա ձայնը.

— Նայի՛ր, տատի՛կ, նայի՛ր...

Գլուխս բարձրացրի, տեսնեմ՝ մի մարդ է գալիս դեպի մեզ: Սարսափը պատեց ինձ՝ շատ տարօրինակ էր հագնված, ոչ մեզ նման: Նա հայտնվեց նա անսպասելի՝ պարզ երկնքից: Ոնց որ ձյունը գլխին: Հետո նայում եմ. մարդը ժպտում է: Նա այնքան բարի է ժպտում, որ սարսափիցս հետք անգամ չմնաց:

Ա. Ա. ՏԱԽՏԱՐՈՎԱ
Անտառապահի կին



# ՄԻ ԵՐԳԱՐ, ՄԻ ՎԱՐԺ ԱՐՋԱԿՈՒՐԴ

(ՎԻՊԱԿ)

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

### ԿԵՍԳԻՇԵՐԱՅԻՆ ՈՒՂԵՎՈՐՈՒԹՅՈՒՆ

...Նա անաղմուկ դուրս սողաց մահճակալից, վերմակի տակ դրեց նախօրոք պատրաստած հին հագուստները: Գլխի փոխարեն բարձի վրա տեղավորեց ֆուտբոլի գնդակը, այնպես, որ ներս մտնողին թվար, թե ինքը քնած է, գլուխը մտցրած վերմակի տակ:

Փողոցում կեսգիշերային խավար էր, և միայն հոբանի լուսարձակն էր լուսնի նման կաթնագույնով լցնում շրջապատը: Վիտյան սրթսրթաց, հայտնի չէ վախից թե լեռներից փչող պաղ քամուց: Նա երբեք կեսգիշերին մենակ դուրս չէր եկել, նույնիսկ գյուղում: Հետո հիշեց, որ պապն ասում էր, գիշերը նույն ցերեկն է, միայն արևի փոխարեն լուսավորում է լուսինը, և հանգստացած ժամադրավայր շտապեց: Դեռ ոչ ոք չկար: Վիտյան բարձրացրեց բաճկոնի օձիքն ու չգիտես ինչու հիշեց, թե ինչպես Կատյան լաց եղավ պապի նամակը լսելուց հետո: Այդ արցունքները ջերմությամբ լցրին տղայի հոգին, և նա ինչ-որ քնքշանք զգաց Կատյայի նկատմամբ: Բայց նույն պահին նրա աչքերի առջև հայտնվեց Իրայի տխուր դեմքը, որն ինչ-որ բանից վիրավորված՝ նամակ չէր գրում:

Խավարի մեջ ոտնաձայն լսվեց, ու Վիտյայի կողքին մի սև կերպարանք հայտնվեց:

— Ի՞նչ ես անում այստեղ, այս ժամին, — խիստ հարցրեց նա:

— Ինչպե՞ս թե, — շփոթվեց Վիտյան, — չէ՞ որ մենք պայմանավորվել էինք:

— Պայմանավորվե՞լ էինք, — ծաղրանքով կրկնեց Նարեկը, — մենք ժամը մեկին էինք պայմանավորվել, իսկ դու տասներկու րոպե է, այստեղ ես:

Վիտյան ձայն չհանեց: Նրա մտքով չանցավ Նարեկին հարցնել՝ եթե դու ճիշտ ժամին ես եկել, ինչ գիտես ես երբվանից եմ այստեղ կանգնած:

Նրանք զգուշաքայլ շարժվեցին դեպի լքված խրճիթն ու անաղմուկ ներս մտան: Նարեկի խոշոր, թավամազ գամփռը ուրախ կլանչոցով նետվեց տղաներին ընդառաջ, բայց զգացվել նրանց սառույց շշուկները, ձայնը կտրեց: Վիտյան ու Նարեկը առանց ժամանակ կորցնելու հագան նախօրոք պատրաստված տուրիստական կոշիկները, յուրաքանչյուրը մի-մի գույգ դահուկ վերցրեց, բահ, մի շիշ դյուրավառ հեղուկ ու մի կապույկ փայտ... և դարձյալ ինչ-որ բաներ:

«Սիրտը՝ 1976 № 12, 1977 № № 1, 2, 3.

— Դե՞հ, — շշնջաց Նարեկը, — պատրա՞ստ ես:

Վիտյան չհասցրեց պատասխանել: Ինչ-որ մեկը ճանկռեց խրճիթի՝ դուռը և պատասխան չստանալով, կամացուկ հրեց ու ներս մտավ:

— Մենք մատնված ենք, — թևաթափ շշնջաց Նարեկը:

Կատյան ուրախ ծիծաղեց ու դուրս եկավ թաքստոցից:

— Տղանե՛ր, խնդրո՛ւմ եմ, ի՛նձ էլ վերցրեք, — մերթ Նարեկի, մերթ Վիտյայի կողմը դառնալով՝ աղաչեց Կատյան, — ես փորձեցի քնել, բայց չկարողացա, ավելի լավ է ձեզ հետ լինեմ, քան մինչև լույս տանջվեմ անկողնում:

— Այդ էր պակաս, — փրփրեց Նարեկը, — իսկո՛ւյն վերադարձիր տուն: Հայրիկդ կլսրթեի, կտեսնի, որ անկողնում չես, և մեր ծրագիրը կտապալվի:

— Չի՛ տապալվի, — համառեց Կատյան, — հայրիկս այնպես է քնած, որ մինչև լույս նույն կողքին քնած կմնա: Առանց ցավում էր, թմրադեղ ընդունեց:

— Դե լա՛վ, որ այդքան շատ է ուզում, թող գա, — միջամտեց Վիտյան և դարձավ Կատյային, — միայն տես հա՛, ճանապարհին լաց չլինես: Մեկ-է, քեզ ոչ ոք չի շալակի:

Արշավախումբը ճամփա ընկավ: Գամփռի ուրախությանը չափ ու սահման չկար: Անընդհատ ատում էր սարնիվեր, պտտվում երեխաների շուրջը և զարմանում, թե ինչո՞ւ են նրանք այդպես դանդաղում: Համենայն ձյան սահմանին, շունն անսպասելիորեն կանգ առավ: Նա երևի չէր հավատում, որ մինչև կոշիկը հասնող կանաչին այսպես անսպասելի կարող է հաջորդել սառը, սպիտակ ծածկույթը:

Քամին էր փչում գլխացից և այնպիսի ուժով ձյունը պտտեցնում օդում, որ թվում էր, թե միանգամից ոտնում են հազարավոր գայլեր: Որպես փորձված դահուկորդ Վիտյան նետվեց առաջ և զգաց, որ դահուկները փախչում են ոտքի տակից: Նոր իջած ձյան տակ սառցաշերտներ կային, որոնց միջիկը հեշտ ու հանգիստ նման չսայթել էր դարձրել: Վիտյան նա

նայեց: Ընկերների շարժումները ավելի անօգնական էին: Քիչ անց տեղերը փոխվեցին: Առջևից գնում էր Ջիմմին, հետո Նարեկը, ապա Կատյան, որին իբրև աղջկա, թողել էին մեջտեղում, վերջից գնում էր Վիտյան: Հակառակի պես, որքան բարձրանում էին, այնքան գագաթը հեռանում էր: Երեխաների կողքից, հավատարմորեն, նրանց հետ դեպի լեռն էր բարձրանում միայն անդնդախոր կիրճը, որին նայելիս մարդու գլուխը պտտվում էր:

— Մամա՜,— հանկարծ ճչաց Կատյան: Վիտյան սկզբում չզգաց, թե ինչ տեղի ունեցավ, միայն մեքենայորեն ետ պարզեց հենափայտը: Կատյան վայրկենապես կառչելով հենափայտի մյուս ծայրից, դողում էր: Վիտյան էլ էր դողում, միայն ենթագիտակցաբար զգում էր, որ պիտի քաշի հենափայտը, ինչ գնով ուզում է լինի: Բայց հուսմո՞ւնքն էր պատճառը, թե՞ քամին, դա նրան չէր հաջողվում, և ամեն մեկը հենափայտի մի ծայրից բռնած, կամաց ցած էին սահում: Իսկ Կատյայի ետևում անդունդն էր: Վիտյան զգաց, որ մոտենում է ճակատագրական պահը:

— Նարե՜կ,— որքան ուժ ուներ գոռաց նա:

Բարեբախտաբար շրջապատի լեռները, քարանձավներն ու կիրճերը հասկացան, թե ինչ ծանր վիճակում է Վիտյան ու սկսեցին արձագանքել նրան, հետը գոռալ.

— Նարե՜կ...

Մի ակնթարթ, և մի գորշ կանգված ձյունը ճեղքելով սուրաց Վիտյայի կողքից ու նետվեց դեպի անդունդի եզրին կախված աղջիկը: Վիտյան զգաց, թե ինչպես հենափայտի մյուս ծայրը թուլացավ: «Վերջ»,— սարսափով մտածեց նա, բայց հաջորդ պահին թեթևացած շունչ քաշեց: Ջիմմին ատամներով ամուր կառչած Կատյայի անդրավարտիքից, քաշում էր վեր: Գամփռի սուր ճանկերը սայթաքում էին սառած ձյան վրա, բայց նա Կատյային հրում էր, ինչպես կարող էր՝ մեջքով, դնչով, փորով:

— Հե՜յ, հե՜յ,— մրրիկը բերեց Նարեկի ձայնը,— ի՞նչ եք ետ մնացել: Շո՛ւտ արեք, շո՛ւտ:

Վիտյան ու Կատյան ջրամբար հասան անսպասելի: Շատ հնարավոր է, որ առանց նկատելու անցնեին, եթե Նարեկի բահի ձայնը չլսվեր: Նա բաճկոնը նետել էր ձյան վրա, իջել էր փոսը ու փորում էր:

— Ինչո՞ւ ուշացաք,— առանց գլուխը բարձրացնելու դժգոհեց նա,— Կատյան էր պատճառը, չէ՞... Ասում էի, նրան չվերցնենք:

Վիտյան Նարեկի օրինակով հանեց բաճկոնը, բահը ձեռքին փոսն իջավ:

— Տեսնո՞ւմ ես, ջրատարը այստեղ է խցանվել,— բահով մետաղե խողովակը թխկթխկացրեց Նարեկը,— հենց որ խցանված ցեխն ու քարերը մաքրենք, ջուրն առաջվա պես կհոսի:

— Դա ի՞նչ է որ...— եռանդով գործի կպավ նաև Վիտյան:

— Բա ես ի՞նչ անեմ,— հարցրեց Կատյան:

— Դո՞ւ...— Նարեկը աշխատանքն առանց դադարեցնելու ասաց,— իսկ դու խարույկ վառիր մեր բերած փայտերից:

— Խարո՞ւյկ... ինչո՞ւ,— կարմացավ Կատյան:

— Որ պարես շուրջն ու չսառչես,— բարձրաձայն ասաց Նարեկը, ապա ինչ-որ բան շշնջաց Վիտյայի ականջին: Վիտյայի աչքերը կարմանքից չռվեցին, պապանձվեցին, բայց շարունակեց աշխատել:

Կատյան իրար վրա դարսեց փայտերը, դյուրավառ հեղուկի շիշը դատարկեց վրան ու մոտեցրեց լուցկին... Փայտերը ճարճատելով բոցավառվեցին, լեռան գագաթը լուսավորվեց: Մրրիկը, որ երևի հարյուրավոր կիլոմետրեր էր անցել ու այդպիսի բան չէր տեսել, միամտաբար խաղում էր խարույկի բոցերի հետ, ապա կատաղած բզկտում, փորձում մարել: Բայց կրակը դրանից ավելի էր բռնկվում: Կատյան, որ խարույկի մոտ պպված բորբոքում էր կրակը, սթափվեց տարօրինակ ձայնից. խողովակաշարում ինչ-որ բան խռխռաց, խլկլաց ու լսվեց ջրի գլգլոց:

— Մենք այստեղ այլևս անելիք չունենք,— Նարեկը ուղղվեց, սրբեց ճակատի քրտինքը,— ետ դառնանք, քանի լույսը չի բացվել:

Երբ դահուկորդները շրջանցեցին սարալանջը, տեսան, թե ինչպես բանավանի կողմից փայլփլուն լույսի մի խումբ անջատվեց ու սկսեց թափով մոտենալ:

## ԻՄ ԽՆՁՈՐԵՆԻՆ

ԼԵՎՈՆ ԲԼԲՈՒԼՅԱՆ

Իմ խնամած խնձորենին ծաղկեց այսօր,
Ու մեր այգին ծփաց մի նոր ճերմակ լույսով:
Մեղուների անթիվ պարսեր հեռուներից
Մեր դեռ անհայտ այգին թռան
Ու բուրավետ լույսերի մեջ
Եղավ ուրախ մի հարսանիք...
Նրանք հետո ցրիվ կգան աշխարհով մեկ,
Որ հեռավոր ծաղիկներին ու ծառերին
Բարև տանեն իմ նորահարս խնձորենուց...



— Նայե՛ք, — բացականչեց Կատյան, — մերոնք գլխի են ընկել... մեզ դիմավորելու են գալիս:

— Կա՛նգ առեք, — գոռաց Նարեկը, — ո՛չ մի քայլ առաջ:

Բայց արդեն ուշ էր: Ջիմմին կատաղի հաչոցով նետվեց դեպի լույսերը: Մի պահ ամեն ինչ խառնվեց իրար: Լսվեց ոռնոց, կլանչոց ու ձյան փոշի բարձրացավ: Այդ ընդհանուր վայնասունի մեջ հանկարծ աղեկեզ կաղկանձեց Ջիմմին և նրա ձայնը խլվելով սկսեց մարել:

Նարեկը բահը վեր պարզած նետվեց դեպի փայլփլող լույսերը: Վիոլան հիշեց, թե ինչ շշնջաց իրեն Նարեկը ջրամբարի մոտ և գլխի ընկավ, որ գայլերը սարի նանում ապաստել են, մինչև իրենք խարույկից հեռանան: Վիոլան մի ակնթարթ միայն նայեց Կատյայի կողմը ու հետևեց ընկերոջ օրինակին: Գայլերը Ջիմմիին շրջապատած, վրա էին նրա սուր ատամները:

Անսպասելի կրակոցը կանխեց օրհասը, վիրավոր տապալվեց գայլերից մեկը, որը մուգ հետք թողնելով փախավ: Մյուս գայլերը նրա արյան քարշ հոտն առնելով, թողեցին հոշոտված Ջիմմիին և շտապեցին իրենց ընկերոջ ետևից: Իսկ ապառաժի մոտ հայտնվեց պատրաստական հագուստով մի մարդ:

— Լսե՛ք, հո դուք գիշերվա սատանա չե՛ք, ի՞նչ եք անում այստեղ այս ժամին: Ախր գայլի բաժին էիք դառնալու:

— Բա դուք ի՞նչ էիք անում այստեղ, այս ժամին, — հարցին հարցով պատասխանեց Նարեկը:

— Ինչպե՞ս թե, — անծանոթը անակնկալի եկավ, — այսօր թունելախորշում աշխատանք չկար... եկել էի նապաստակ որսալու:

— Լավ որսորդ եք երևում, — հառաչեց Վիոլան, — այդ հեռավորությամբ վրա կարողացաք նշան բռնել գայլին:

— Էհե՜, դուք դեռ չգիտեք, թե Տիգրանը ինչեր կարող է անել, — ծիծաղեց անծանոթը, — երևում է, դուք էլ քաջ-աղերք եք, որ այս ժամին սար եք բարձրացել, ես սպասում էի հուսահատ մարդկանց՝ մեծ լինի թե փոքր:

Նա գրկեց Նարեկի ու Վիոլայի ուսերը.

— Եկեք վաղը միասին որսի գնանք... Եթե, իհարկե, թունելում աշխատանք չլինի:

— Թունելում վաղը աշխատանք կլինի, — ժպտաց Նարեկը:

— Ինձ էլ է թվում, — վրա բերեց Վիոլան:

— Թվալը քիչ է, — ասաց Տիգրանը, — ես եկել եմ հետաքրքրվելու և պարզելու, թե ջրի խափանումը որտեղից է սկսվում...



— Ոչ մի խափանում չկա, քեռի՛... մենք արդեն պարզել ենք... Ջուրն անարգել հոսում է խողովակներով,— աղաղակեց Կատյան:

— Դու ի՞նչ ես անում այստեղ, աղջիկ տեղույդ...— Տիգրանը նոր միայն նկատեց նրան:

— Մենք երեքով ենք,— ասաց Վիտյան:

— Չորսով էինք,— լացակումած ասաց Նարեկը,— գայլերը պատառոտեցին Ջիմմիին:

— Բա որ ես չգայի կամ ուշ վրա հասնեի, ա՛յ խոխեք...

— Միևնույն է... ջրի խափանումն արդեն վերացրել էինք...

— Ինչպե՞ս... Բանն այնպես ասեք, որ հասկանամ:

Երեքն իրար ընդմիջելով, շտապ-շտապ պատմեցին, Տիգրանը, սարսափահար, գլուխը բռնեց.

— Ա՜յ խոխեք, ձեզ մի բան պատահեր՝ աշխարհով մեկ խայտառակվելու էին ձեր մեծերը... ես էլ նրանց հետ... թքելու էին երեսներիս: Ասելու էին մեծերը չբաշարեցին, երեխեքը իրենց կյանքի գնով արին մեծերի անելիքն ու գելերոց եղան...

Լուսադեմին, նրանք տաք անկողիններում, տաք վերմակների տակ, մղձավանջային երազի մեջ, կրկնում էին իրենց գիշերային անսովոր ճանապարհորդությունը:

*(Շարունակելի)*

## 1976 • ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ • ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ • 1976

**«Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերի 1976 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակը շնորհվեց արձակագիր Ռուբեն Հովսեփյանին «Դո-ռե-մի-ֆա-սոլ-լյա-սի-դո» և «Մարիամ տատի գանձը» պատմվածքների համար:**



**«Ծերանիկ» երգիծական նկարաշարքի համար նկարիչ Նիկոլայ Մանուկյանը արժանացավ 1976 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին:**





# ԵՐԲ ԳՏՆՈՒՄ ԵՍ ՔՈ ԱՍՏՂԸ




Դուք ինձանից ամեն օր նոր պատմություն եք պահանջում: Իսկ ես արդեն շատ բան մոռացել եմ: Երբեմն չեմ էլ կարողանում հիշել, թե ինչ եմ պատմել մինչև այժմ: Հաճելի բան չէ, բայց ոչինչ՝ անել չես կարող...

Երեկ, երբ դուք ինձ հյուր էիք եկել, ես այդպես էլ ոչինչ հիշել չկարողացա: Դուք կարծում էիք, թե պարզապես պատմելու ցանկություն չունե՞մ: Պատմել ես միշտ ուզում եմ, դա ինձ համար նույնպես հաճելի է: Չէ՞ որ պատմելիս ես վերհիշում եմ անցած գնացած դեպքերը: Հրաժեշտ տալիս ես ձեր աչքերում հիասթափություն նկատեցի և երկար ժամանակ անքուն մտածում էի: Մտածում էի իմ կյանքի անցուդարձերի մասին և փորձում ձեզ համար որևէ բան հիշել: Հետո հանկարծ հիշեցի, հիշեցի իմ կյանքի ամենակարևոր սկիզբներից մեկը, իսկ կյանքում սկիզբներ շատ են լինում:

Թե քանի տարի է անցել, ես չեմ կարող ճշգրիտ ասել: Ես այն ժամանակ դեռ փոքր էի և ամեն շաբաթ փոխում էի մտադրությունս, թե մեծանալուց հետո ինչ եմ դառնալու: Հայրիկը բազմաթիվ ընկերներ ուներ, որոնք հաճախ հյուր էին գալիս մեզ: Եթե պարզվում էր, որ մեր հյուրը նկարիչ է, ես որոշում էի անպայման նկարիչ դառնալ: Ֆիզիկոսի հետ ծանոթանալուց հետո ինձ համար ֆիզիկան դառնում էր ամեն ինչից հետաքրքիր...

Իսկ այն երեկոյան ես տանից դուրս եկա՝ որպեսզի նայեմ աստղերին: Դա իմ կյանքի այն շրջանն էր, երբ ես տարված էի նրանցով: Այո՛, ես դուրս եկա մի քանի րոպե աստղերին նայելու: Աստղերը շատ էին, անթիվ, և ես հերթով նայում էի նրանց: Եվ ահա, հենց այն պահին, երբ հայացքս փոխադրեցի մի նոր աստղի վրա, աստղը ժպտաց ինձ: Ես չեմ կարող նկարագրել, թե ինչպես է ժպտում աստղը մարդուն: Սակայն դու անմիջապես գլխի ես ընկնում, որ նա իսկապես ժպտում է, և այդ ժպիտն ուղղված է հենց քեզ:

Ես ապշած նայում էի այդ աստղին, այդ կապույտ աստղին, իսկ նա շարունակում էր ժպտալ:

— Դու ինչպե՞ս ես ժպտում, Ա՛ստղ,— ինքս ինձ համար հարցրի ես:— Մի՞թե դու կարողանում ես ժպտալ:

— Կարողանում եմ,— լսեցի ես ու անակնկալի եկա: Ես ոչ մի պատասխան չէի սպասում, քանի որ հարցը տվել էի միայն ինքս ինձ համար: Իսկ աստղը հանկարծ պատասխանեց ինձ.

— Բոլոր աստղերը կարողանում են և՛ ժպտալ, և՛ ծիծաղել, և՛ տխրել: Միայն հարկավոր է նկատել...

— Ես չգիտեի,— ասացի:— Ես երբեք այդ մասին չէի լսել:

— Ամեն մարդու կյանքում գալիս է մի պահ, երբ նա գտնում է իր աստղը,— բացատրեց ինձ կապույտ Աստղը:— Դրանից հետո նրանք բարեկամանում են իրար:

— Ինչպե՞ս,— զարմացա ես:— Հանկարծ նայում է աստղերին ու նրանց մեջ գտնում իրե՞նը:

— Ո՛չ, ոչինչ այդպես հանկարծակի չի լինում,— ժպտաց Աստղը:— Այդ հանդիպումը նախապատրաստվում է երկար տարիներ, ամենափոքր հասակից: Իսկ հետո միայն, երբ մարդը պատրաստ է հանդիպելու իր աստղին, նա սկսում է գիշերներն ինչ-որ բան փնտրել երկնքում: Փնտրում է, ինքն էլ չհասկանալով, թե ինչ: Ամեն գիշեր դուրս է գալիս տանից ու նայում երկնքին: Նայում է երկա՜ր-երկա՜ր...

Ես նայում էի իմ աստղին ու լսում նրա պատմությունը: Ես արդեն համոզված էի, որ նա իսկապես իմ աստղն է: Ոչ թե նրա խոսքերի պատճառով, ո՛չ: Պարզապես ես արդեն գիտեի այդ մասին, նույնիսկ նրա ասելուց առաջ, նրան նայելուց անմիջապես հետո հասկացել էի դա:

— Համարյա բոլոր մարդիկ էլ օրերից մի օր գտնում են իրենց աստղը,— շարունակում էր նա:— Ոմանց աստղերը լինում են պայծառ, վառվռուն, որոնք առաջինն են հայտնվում Արեգակի մայրամուտից հետո: Ուրիշներինը լինում են ավելի թույլ, երրորդներինը՝ հազիվ նշմարելի...

— Չեմ հասկանում,— վշտացա ես:— Ինչո՞ւ են տարբեր մարդկանց աստղերը տարբեր պայծառության:

Բանն այն է,— համբերությամբ բացատրում էր Աստղը, որ աստղի մեծությունը կախված է նրանից, թե ինչքան են երազում այդ մարդիկ: Բայց նրանք երազում են ոչ խիստ նման, այդ տեղ արդեն ոչինչ անել չես կարող:

— Կարծես թե գլխի՞ եմ ընկնում,— բացականչեցի ես:— Ուրեմն ես քեզ գտա, որովհետև սկսել եմ երազել...

Այո՛:

Եվ դու այդպես պայծառ ես...

Որովհետև դու երազել շատ ես սիրում:

Նա նորից ժպտաց, և ես այլևս ոչինչ չասացի: Մենք նայում էինք իրար: Ես ու իմ աստղը: Հետո ես ամեն երեկո հանդիպում էի նրան, և մենք զրուցում էինք ամեն ինչի մասին:

Ո՛չ, ես այսօր այդքան բան պատմել չեմ կարողանա: Իհարկե, հետո ես ամեն ինչ հերթով կպատմեմ... Գիշերները կցանկանամ հիշել, որպեսզի հաջորդ երեկոներին, ձեր այցելությունների ժամանակ պատմեմ ձեզ:

Ես չգիտեմ, գուցե դուք է՞լ արդեն հանդիպել եք ձեր աստղերին: Իսկ եթե չեք հանդիպել, ոչինչ, շուտով կգտնեք նրանց: Միայն հարկավոր է հաճախ նայել երկնքին...

## ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆ

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

— Լուսինը երկնքի վրա
Սպիտակ սփռոց է փռել,
Հեյ-հե՜յ, ծաղկել են աստղերը,
Հեյ-հե՜յ, արեգակն է քնել:

Եվ տատս օրորվում էր երգի հետ
Մթան պես սև շորերը հագին,
Իջնում էին աստղեր շողշողուն
Մեր արդեն խարխլված տանիքին:

Տանիքը մեր տան գլխարկն էր
Պապիս հին փափախին շատ նման,
Ամեն օր զանգակներ էր կախում
Արևը երդիկից մեզ վրա:

Մի «ամրոց» խոտ կար տանիքին,
Ու բույրը ամբողջ տունն էր բռնել,
Հեյ-հե՜յ, իմ պապի գերանդին
Լուսինն էր օրհնանքով արծաթել:

Գիշերը սարդի պես նորից
Իր սև գործվածքն է հյուսում,
Հե-հե-հե՜յ, իմ պապի նման
Կորել են սարերը դրսում:

## ԳԱՌՆՈՒԿՆԵՐԸ

*ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Թե որ գառնուկը ցորնագույն ծնվեց,
Առողջ կլինեն ցորեններն ու մեծ:

Թե որ գառնուկը ծնվում է դեղին,
Առատ աշուն է ժպտալու հողին:

Թե որ ծնվում է սպիտակ մի գառ,
Խաղաղ կլինի ձմեռն անպատճառ:

Եվ աշխարհ գալով սևամազ գառան՝
Խոպաններն անշուշտ հերկեր կդառնան:

Նայում է տատը և ժպտում բարի.
— Բախտի նշան է ծնունդը գառի:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



## ՊԻՈՆԵՐ-ի փոստից

# ԵՐԿՈՒ ՃԱՆԱՊԱՐՀ

*Երկար մազերով տղան անփույթ և թափթփված, մտավ դասարան, պայուսակը նետեց անկյունն ու... սկսեց արևածաղիկ ուտել:*

*Սա եղավ նրա առաջին գործը:*

*Երկրորդը՝ կոպտեց ընկերուհուն, որն զգուշացրեց, թե դասարանում արևածաղիկ ուտելը անվայել է աշակերտին:*

*Դասն սկսվեց:*

*Ուսուցչուհին նրան գրատախտակի մոտ կանչեց:*

*— Չեմ սովորել,— ասաց:— Հայրիկս հիվանդ էր, ի վիճակի չէի...*

*Ավելի աններելի «սուտ» չկա, քան սիրելի ու առողջ հայրիկին, սեփական ծուլությունն արդարացնելու համար, հիվանդ հայտարարել:*

*Ուսուցչուհին բարի էր և հավատաց: Եվ ներեց նրան, ասելով, որ եթե հաջորդ անգամ ևս պատրաստ չլինի դասը, կվաստակի երկու հատ «երկուս»:*

*«Հայրիկի հիվանդությամբ հուզված տղան» դասերի վերջում քաշքշելով աղջիկների մազերը, ցատկոտելով, ծեծկռտվելով, փողոց վազեց:*

*Գոռում-գոչյունով տուն հասավ և պայուսակը հեռվից թափով նետեց մահճակալին:*

*Քիչ անց նորից փողոցում էր: Զայն տվեց Մանվելին, թե եկ՛ խաղանք: Նա ասաց՝ չի կարող, դասերն է պատրաստում: Սա վազեց հարևան բակը, գտավ իր նման մեկին: Խաղացին մինչև հոգնելը: Հետո գնաց տուն, հաց կերավ, և վերջին պատառը ծամելով՝ նստեց հեռուստացույցի առաջ:*

*Առավոտյան դասից ուշացավ:*

*— Ընկե՛ր Հայրապետյան, ընկեր Խաչատրյանն ինձ տեղ էր ուղարկել,— հորինեց նա:*

*Գրատախտակի մոտ կանչվելով, սկսեց կակազել, իսկ օրագրում, որպեսզի «2» չգրանցվի, պայուսակից գողունի հանեց օրագիրը և պահանջեց, որ ընկերները շարքից-շարք փոխանցելով թաքցնեն, իսկ ինքը, թե՝*

*— Ընկե՛ր Հայրապետյան, օրագիրս երեկ թողել եմ դպրոցում:*

*— Նստի՛ր, նորը կվերցնես: Մատյանում ունես «2»...*

*Իբր աչդված, նա գլուխը կախեց և ծալված ձեռքերի արանքից, թղթից պատրաստած գնդիկներով սկսեց հարվածել աղջիկներին: Դասամիջոցին առաջինը հայտնվեց բուֆետում: Հետո գտավ իր նմանին և դասից ծլկեցին կինո: Հերթական սուտը մայրիկի համար էր պահված.*

*— Այսօր վերջին դասը չարեցինք: Ուսուցչուհին չէր եկել: Մնացած առարկաներից, ձեռք բարձրացրի, չհարցրեցին:*

*Ժամացույցի եռնի 10 ռուբլին գայթակղում էր նրան: Հաջորդ օրը տանից կորավ 10 ռուբլի: Իբրև ամփոփումն այս ամենի եղավ այն, որ տղան հայտնվեց միլիցիայի անչափահասների սենյակում:*

*Նրա առջև կա մի ծուռ, մի ուղիղ ճանապարհ... ո՞ր ճանապարհն է, ի վերջո, բռնելու, և ո՞ւր է հասցնելու նրան իր բռնած ճանապարհը, ոչ ոք դեռ չգիտի:*

ԱՏՈՄ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ —
Եղվարդ, № 2 միջն. դպրոց



*ՍԵՐԳԵՅ ՕՍՏՐՈՎՈՅ*

# ԵՂԵԼՈՒԹՅՈՒՆ

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

Աղավնին լուսադեմին թակեց պատուհանս: Նոյեմբերի այն կեսն էր, երբ անսպասելի ու կատաղի սառնամանիքները այրում են հողը: Դեռ երեկոյան երկինքը պատած էր ամպերով, ամեն ինչից երևում էր, որ անձրև է գալու: Իսկ գիշերը եղյամը սպիտակեցրել էր փողոցները:

Ես բացեցի պատուհանը ու մի կողմ քաշվեցի, որ չվախեցնեմ թռչունին: Աղավնին նստած էր քիվին: Երևի նրա տոտիկները սառել էին: Կամ ինչ-որ բան էր կուլ տվել: Սուր, շատ սուր բան: Նրա տառապած աչքերը խոր ծերություն ապրող մարդու աչքերի նման լի էին անտարբերությամբ:

Ես նրան ափիս մեջ առա: Չթպրտաց: Չփորձեց թռչել: Կարծես չէր զգում մահվան սարսափը: Նա հասկանում էր իր հետ կատարվելիքի անխուսափելիությունը և լուռ, գրեթե մարդկային արժանապատվությամբ, մոտենում էր իր վախճանին:

Մի ամբողջ օր և էլի մի գիշեր նա անշարժ մնաց պատուհանի գոգին՝ ամեն ինչից և ամենքից հեռացած: Օրվա որ ժամին էլ նայում էի, նա նույն դիրքով էր՝ գլխիկը ծերունավարի ուսերի մեջ քաշած, կտուցը քիչ բաց, իսկ փետուրները կապույտին էին տալիս, կարծես նրանք մեկիկ-մեկիկ երկընքի պաղ լազուրում այնքան էին լողացել, մինչև որ ներկվել էին երկնային կապույտով:

Երկրորդ գիշերվա վերջին աղավնին շրջվեց դեպի լուսամուտը և երկար-երկար նայեց երկնքին: Ի՞նչ էր տեսնում այնտեղ: Ո՞ւմ էր հրաժեշտ տալիս: Ի՞նչն էր ավելի ափսոսում այդ րոպեներին: Այդ ոչ ոք չիմացավ: Հետո նա ուժ գտնելով իր մեջ՝ իջավ հատակին, քիչ կանգնած մնաց, հետո հենվեց սպիտակ պատին, գլխիկը թեքեց ուսին և լուռ, առանց որևէ հոգոցի՝ մեռավ:

Ես այլևս քնել չէի կարող: Հասկանում էի, որ դա անխուսափելիորեն պետք է կատարվեր, բայց սիրտս ոչ մի կերպ չէր հաշտվում այն մտքի հետ,

## ԹԵՎԱՎՈՐ ԽՈՍՔԵՐ

### ԿԱՐԱՊԻ ԵՐԳԸ

Այս պատկերավոր արտահայտությունը, ինչպես և նրան ծնող հավատալիքը, կարծես թե հիմնված է թյուրիմացության կամ սխալմունքի վրա:

Կենդանաբանները գիտեն կարապների երկու տեսակ՝ չչացող և կռնչացող: Երկրորդ տեսակին պատկանողները ունեն չեփորի հնչեղ ձայն, իսկ առաջին տեսակին պատկանողները միայն ֆըշշացնում են: Հավանաբար, մեր հեռավոր նախնիները չեն կարողացել այդ թռչունի տեսակները, շփոթել են իրար հետ: Ոմանք լսել են «կարապի կռինչը», մյուսները տանը պահել են ձեռնասուն կարապներ և ոչ մի ձայն չեն լսել նրանցից:

Այսպես կարող էր ծնվել մի համոզմունք, որ կարապները թեպետև երգում են, բայց կյանքում մի անգամ միայն՝ մահից առաջ:

Դեոնս Էսքիլեսի «Ագամեմնոն» ողբերգության մեջ Կլիթեմնեստրա թագուհին կանխագուշակ Կասանդրային սպանելուց հետո ասում է.

«Նա ընկավ իմ ձեռքով,
Մահից առաջ երգելով իր կարապի երգը»:

Ժամանակակից լեզուն կարապի երգ է կոչում մարդու վերջին, մահից առաջ կերտած ստեղծագործությունը:

### ԼՈՒԿՈՒԼԼՈՍՅԱՆ ԽՐԽՃԱՆՔ

Այսպես ենք ասում, երբ տեսնում ենք բազմատեսակ և համադամ ուտեստներով ծանրաբեռնված սեղան: Իր ծագումով «լուկուլլոսյան խրախճանք» արտահայտությունը պարտական է հըռոմեացի կոնսուլ Լուցիոս Լիցինուս Լուկուլլոսին, որն ապրում էր Հռոմի «ոսկեդարում», երբ Հըռոմի հանրապետությունը հնադարյան աշխարհի ամենահարուստ ու հզոր պետությունն էր:

Վաղուց մոռացության էր մատնվել բուրգերի սպարտական պարզությունն ու խստությունը. Հռոմն էր վեր բարձրացել ուրիշ պետությունների համեմատությամբ: Տիրապետում էր սահման չճանաչող փափկասունությունն ու նրբաճաշակությունը: Ամբողջ աշխարհն այդ ժամանակ Հռոմի խորտկասերներին ուղարկում էր պարմանալի ուտեստներ նրանց խոհանոցի համար: Գրող Վարրոնը վկայում է, որ մեծահարուստների խոհարարները տապակում էին սիրամարգեր, որոնք բերվում էին Սամոս կըղզուց, ափական սալամբ, հունական կռունկներ: Նախաճաշին ճաշակում էին հարավային Իտալիայից բերված ոստրեներ, իսկ քաղցրավենիք մատուցվում էր եգիպտական արմավ: Մոլեգին խորտկասերները ճաշատեսակ էին ստեղծել նույնիսկ... սոխակի լեզուներից:

Եվ ահա Հռոմում, որ վաղուց չէ, ինչ հպարտանում էր այնպիսի հերոսներով, ինչպիսիք էին Մուցիոս Սկևոլան, հոչակավոր տրիբունները, Գրակքոս եղբայրները, ամենից հռչակավոր մարդը դարձավ «մեծ որկրամոլ» կոնսուլ Լուկուլլոսը: Ասում են, թե նա կրթված մարդ է եղել և քաջ զորավար: Սակայն ոչ ոք այլևս չի հիշում, որ Լուկուլլոսը եղել է զորավար, ունեցել է շատ մեծ գրադարան, որից օգտվել թույլատրվել է գրասեր ամեն մի անձի. ժողովուրդների հիշողության մեջ մնացել է շռայլ ու որկրամոլ Լուկուլլոսը, որի շքեղ խրախճանքները ասելիք են դարձել:

որ բնությունը միշտ ետ է վերցնում այն, ինչ երբևէ տվել է: Երբեմն՝ շուտ, երբեմն՝ ուշ:

Ես վերմակով գլուխս ծածկեցի ու պառկեցի մեջքիս. շուտով մանրիկ ընդհատ հարվածներ լսվեցին պատուհանի ապակուն: Դա ձայնի ինչ-որ կետավոր սղագրություն էր: Կետ-գծիկ... կետ- գծիկ... սկզբում կարծեցի, թե անձրևի կաթիլներ են, և եղանակը, այնուամենայնիվ, իրենն է անում: Ու չէի ուզում դուրս գալ վերմակի տակից: Բայց այդ ձայները շարունակում էին ինձ զգաստացնել, խըցկըվել ականջներս և թվում էր շտապեցնում են: Վերմակս ետ գցեցի և լուսաբացի աղոտ աղջամուղջի մեջ ապակու ետևում տեսա մարի աղավնուն: Նա նստել էր քիվին և իր փոքրիկ երկաթյա կտուցով անընդհատ խփում էր ապակուն: Այդ ամենի մեջ ինչ-որ միստիկ բան կար: Մարին նըստած էր հենց այնտեղ, ուր երկու գիշեր առաջ աղավնին էր նստել: Այստեղ արդեն ես վերջնականապես արթնացա նրա լացից: Այն բխում էր նրա փոքրիկ մարմնի ինչ-որ խորքերից, որոտում էր նրա մեջ, պատեպատ խփվում և ապա խռպոտ կոհնչով դուրս նետվում:

Ես բացեցի պատուհանը: Մարին ինձանից չըվախեցավ: Դրեցի նրան լուսամուտի գոգին: Ափսեի մեջ կաթ լցրեցի, հաց փշրեցի մեջը: Նա չըմոտեցավ: Նրա բիբերը անշարժ գամվեցին փոքրիկ գորշակապույտ գնդիկին, որ անշարժացել էր հատակին: Հետո նա ցնցվեց, թպրտաց, աղմուկով թափահարեց թևերը և դուրս թռավ: Իսկ մի ակընթարթ հետո տեսա, թե ինչպես նա ինչ-որ բարձունքից կրծքով զարնվեց քիվին և քարի պես ընկավ գետին, ինչպես աստղերն են ընկնում, երբ տխրած են ու մենակ:

Ես նրանց թաղեցի կողք-կողքի:

*Թարգմ. ՏԱԹԵՎԻԿ ՊՈՂՈՍՅԱՆԻ*

Նկարիչ Հրաչյա Ռուխկյանը բասն տարի շարունակ տարբեր առիթներով հանդիպել է Ավետիք Իսահակյանին: Եվ ամեն անգամ կատարել է բազմաթիվ ճեպանկարներ: Դրանք առանձին-առանձին արտահայտում են Վարպետի տարբեր հոգեվիճակները: Տպագրում ենք նկարչի ճեպանկարներից մի քանիսը և մի հատված հուշերից:



# ՎԱՐՊԵՏԻ ՀԵՏ

1950 թվականից սկսեցի շրջել Հայաստանում, նկարել պատմական հուշարձանները, ճարտարապետական նշանավոր կոթողները: Ծրագիրս այդ էր: Բայց մի կյանքի ընթացքում հնարավո՞ր է բոլորը նկարել... Վարպետը խրախուսեց ինձ.

— Նկարե՛, լավ ես ծրագրել, նկարե՛:

Ոգևորված վարպետի խորհուրդներով՝ եղա տարբեր շրջաններում և հուշարձանները նկարելով, միաժամանակ լսում էի դրանց մասին ժողովրդի մեջ պահպանված ավանդությունները:

Իջևանի շրջանից բերել էի «Կիրանց վանքի» նկարը: Ցույց տալով վարպետին, պատմեցի, թե ինչու է կոչվել «Կիրանց»:

Կառուցող վարպետը իր աշակերտին է թողնում շարունակելու աղյուսաշեն այդ հավլվացյուտ կառույցը և ինքը գնում է մի ուրիշ պատվեր կատարելու:




# ՎԱԽԵՑԱՆ

Ահա ավելի քան հիսուն տարի է Մեծ Բրիտանիայում գոյություն ունի «Վուդվորդ-ֆոլկս» («Անտառի բնակիչներ») կազմակերպությունը, որը միավորում է վեցից մինչև տասնյոթ տարեկան երեխաներին: Այդ կազմակերպությունը բաղկացած է մանկական երեք ընկերություններից. «Էլֆինս» («Բարի ոգիներ»), «Պահոնիրս» («Հետախույզներ») և «Սորվենչյարերս» («Արկածներ որոնողներ»):

«Վուդվորդ ֆոլկսում» երեխաներին դաստիարակում են ուրիշ երկրների երեխաների նկատմամբ բարեկամության, խաղաղության պաշտպանության ոգով:

Եվ հանկարծ տագնապ. անգլիական «Գարդիան» թերթը հաղորդում է, որ պահպանողականները մտահոգված են այդ կազմակերպության գործունեությամբ: Նրանք հայտարարեցին, որ այդ երեխաները մասնակցում են «ծայրահեղ անգլիական», ձախ և կոմունիստների ազդեցության տակ գտնվող ընկերությունների միջոցառումներին»:

Պահպանողական կուսակցության ղեկավարները հանդես եկան կոչով, որ պետք է բոլոր ուժերը ներդնեն «կարմիր վտանգի» դեմ:

«Էլֆինսները գործում են»,— վախեցած աղաղակում են պահպանողականները: Այդ խմբի անդամները վեցից-ինը տարեկան են: Ի՞նչ կարող են անել փոքրիկ «Բարի ոգիները»: Աղքատներին ու գործազուրկներին օգնելու համար նրանք փող են հավաքում, սոցիալիստական երկրների երեխաների հետ նամակագրական կապ են ստեղծում:

Պահպանողականների հիմար, ծիծաղաշարժ կամպանիան, իհարկե, ողջամիտ անգլիացիների մոտ բողոքի տեղիք տվեց: «Վուդվորդ ֆոլկսի» քարտուղար Մարգարետ Ուայտը հայտարարեց. «Ուրիշ ժողովուրդների հետ բարեկամության ու խաղաղության գաղափարը մեր հասարակության համար վտանգավոր համարելը, ամենաքիչը, հիմարություն է»:

Երբ ժամանակ անց վերադառնում և տեսնում է հոյակապ շինությունը, հիանում է: Սակայն ներքուստ նախանձն ուտում է սիրտը: Մտածում է, մտածում և գտնում է աշակերտի աշխատանքը նսեմացնելու ձևը: Վերցնում է մի փայտի կտոր և խառնում է շաղախը: Աշակերտն արդեն գմբեթի վերջին աղյուսներն է շարելիս լինում, որպեսզի խաչը կանգնեցնի: Մեկ էլ ներքևից, ականջին է հասնում վարպետի զայրալից ձայնը.

— Էս ի՞նչ ես արել, կիրանց է,— այսինքն կրի ժամանակն անցած է...

Աշակերտն այս որ լսում է, սարսափահար է լինում. եթե կիրն անց է, նշանակում է կրաշաղախը անպետք է և իր աշխատանքը ջուրն է թափվել... Եվ հուսահատված, վերևից իրեն նետում է ցած:

Կիսավարտ «Կիրանց վանքը» տասներեքերորդ դարից այդ վիճակով էլ հասել է մեզ:

Երբ այս ավանդությունը պատմեցի վարպետին, նա գլուխն օրորեց և ափսոսանքով ասաց.

— Ավանդությունը շատ է հայկական, դժբախտաբար այդպես է...

Նկարչի տանը բացվել էր իմ առաջին անհատական ցուցահանդեսը: Բացման օրը վարպետը բացակայում էր: Տկար էր: Կազդուրվելուց հետո, պայմանավորված ժամին Մարտիրոս Սարյանի հետ եկավ: Իմ ուրախությունը կրկնապատկվեց: Խորապես կգացված, դիմեցի Վարպետին.

— Վարպե՛տ ջան, Մարտիրոս Սերգեյիչի ներկայությամբ խոստանում եմ հավանածդ նկարը նվիրել քեզ:

Վարպետը նայեց նկարներին, Սարյանին, ապա ժպտալով, դարձավ ինձ.

— Լոպպա՛կ գլումրեցի, վնաս մեծ կլինի:

— Մեկ նկարը բավական է,— միջամտեց Սարյանը:

Վարպետներին ամենից շատ դուր եկան ջրաներկով կատարված բնության տեսարանները, հատկապես «Ջրաղաց Բյուրականում» նկարը, որը մատնացույց անելով, Վարպետն ասաց.

— Մեղք ես, էս մեկը հերիք է:

Սարյանը գլխով հավանության նշան արեց:

Ցուցահանդեսը փակվելուց հետո, Վարպետի տուն տարա «Ջրաղաց Բյուրականում» նկարը, որը և մինչև հիմա կախված է նրա հյուրասենյակում: Ես անչափ շոյված էի, որ այդ նկարով ուրախություն պատճառեցի Վարպետին:

Վարպետի տեքստերով հորինված բազմաթիվ երգեր ժողովուրդը երգում է՝ երբեմն մոռանալով ստեղծագործողի անունը: Նրա ստեղծագործությունները երգ դարձած՝ անցնում են շուրթից շուրթ:

Մի օր նա պատմեց հետևյալ դեպքը:

— Դեռ ջահել էինք, սիրում էինք ընկերներով գարնանը թափառել: Սարը բարձրացանք: Երկու գյուղացի վար էին անում: Մաճը բռնած գյուղացին մեղմ ու քաղցր ձայնով երգում էր «Մաճկալ ես, բեկարած ես»: Լսելով գնում էինք ետևից: Երբ վերջացրեց, մոտեցանք, բարևեցինք, հետո ես հարցրի, թե՝ էդ ի՞նչ կերգես: «Էդ քո խելքի բանը չէ»,— պատասխանեց: Ասացի, որ այդ երգը ես եմ գրել...

Նայեց, ոտից գլուխ չափեց ինձ, ու՝ «Գնա գործի՛դ, էդ մեր գեղի երգն է»,— ասաց ու շարունակեց վարը:

Վարպետի վիթխարի արվեստը համամարդկային վսեմ գաղափարներով է ներթափանցված:

Հայ դասական գրականության մեծագույն ներկայացուցիչներից է նա՝ խոր արմատներով կապված իր ժողովրդի հերոսական պատմությանը: Այսօր, վաղը և միշտ նա կմնա իր ժողովրդի հետ, նրա հետ կքայլի պատմության քառուղիներով դեպի հավիտենականություն:



# ԱՐԾԱԹԱՓԱՅԼ ԱՄՊԵՐ

Մոտ հարյուր տարի առաջ, մոսկվացի աստղագետ Վ. Կ. Ցերասկին երեկոյան դիտելով երկինքը, հանկարծ նկատեց անսովոր փայլով ամպեր: Արևն արդեն մայր էր մտել, իսկ նրանք դեռ չէին կորցրել մարգարտակապտավուն փայլը: Այդ դեպքից հետո Ցերասկին շարունակեց իր դիտումները և տասը տարի հետո, 1885 թվին, որոշեց նրանց մոտավոր բարձրությունը՝ 75 կմ: Հետագայում այդ բարձրությունը ճշտվեց՝ 82 կմ:

Շատ երկրների գիտնականներ սկսեցին դիտել այդ ամպերը, որոնք առաջին հայացքից նման են փետրավոր ամպերի, բայց վերջիններս արեգակի մայր մտնելուց հետո երկնակամարի վրա երևում են որպես սև կետեր: Այդպես են նաև արծաթագույն ամպերը, որոնք մայրամուտի ժամանակ կարմրում են, հետո սևանում: Նոր հայտնաբերված ամպերն անվանեցին արծաթափայլ: Պարզվել է, որ այդ ամպերը երևում են տաք եղանակներին, հիմնականում ամռանը, մոտավորապես հյուսիսային 45—75 աստիճան և հարավային 40—60 աստիճան լայնություններում: Նրանք տարեկան երևում են 10—30 անգամ, երբեմն՝ ավելի քիչ:

1951 թ. ապրիլի 13-ին այդ ամպերն երևացին Լենինգրադի երկնքում, և հաջորդ տասնօրյակում Կենտրոնական Եվրոպայի եղանակը շատ տաքացավ: Նման դեպքեր արձանագրվել է մի քանի անգամ: Ստացվում է, որ արծաթափայլ ամպերը հանդես են գալիս որպես տվյալ ամսվա կամ տարվա մթնոլորտային երևույթները բնութագրող, սակայն մինչև օրս դեռ չի պարզված նրանց առաջացման պատճառները, ճշգրիտ սահմաններն ու շարժման ուղղությունը, արագությունը և այլ տվյալներ: Գիտնականներից ոմանք կարծում են, որ դրանք մթնոլորտի վերին շերտերում եղած հրաբխային փոշիներն են, որոնք մայրամուտից հետո էլ դեռ լուսավորվում են արեգակի ճառագայթներով և մթության մեջ երևում են արծաթափայլ: Ուրիշները ենթադրում են, որ բարձր շերտերում եղած գոլորշիներն են վերածվում ամպերի. դրանք գերսառը սառցյա բյուրեղիկներ են, ուստի արեգակի ճառագայթների տակ արծաթափայլ են դառնում:

Արծաթափայլ ամպերի ուսումնասիրությամբ զբաղվում են նաև Մոսկվայի պիոներ-դպրոցականները: Ավելի քան 20 տարի ջոկատներով դիտումներ և գրառումներ են կատարում:

*ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՐԳՍՅԱՆ*

# ԱԶԱՏԱՎԱՆԻ ԾԻՐԱՆԱՆՈՑՈՒՄ

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

Սկսվել էր Արարատյան դաշտի գարունը: Ձնհալից վարարած Արաքսը դեպի ծովն էր տանում վերջին սառցակտորները: Ամենուր նորաբաց ծաղիկներ էին հայտնվել: Սև հերկերից գոլորշի էր բարձրանում: Զանգվածաբար ծաղկել էին Ազատավան գյուղի այգիները: Մեղվափեթակները շարել էինք կողքի բացատում, աղբյուրի մոտ:

Գարնանային արևոտ օր էր: Մեղվանոցում մի քաղցր ու մեղմիկ բվվոց էր լսվում: Ծիրանի ծաղկած ծառերի վրա աշխատող ժրաջան մեղուների քաղցր ձայնը համեմվում էր ծաղիկների անուշ բուրմունքով: Տեսարանի գեղեցկությունից, մեղվի քաղցր ձայնից, օդի անուշ բուրմունքից ուռչում էր սիրտս: Ինչպիսի՜ հոգեպարար ու հուզիչ երաժշտություն:

Բնության պարգևած հաճույքը դեռ մի լավ չէի վայելել, մի խումբ գյուղացիներ մոտեցան ինձ ու պահանջեցին՝ քե շուտ մեղուներին տար այստեղից, մեղուներդ ուտում են մեր ծառերի ծաղիկները: Բացատրում եմ, որ մեղուները խաչաձև կփոշոտեն ձեր ծառերի ծաղիկները և դուք այս տարի կրկնակի բերք կստանաք: Ոչ մի կերպ չեն ուզում լսել: Գործը շատ վատ վախճան կունենար, եթե պատահմամբ դեպքի վայր չգային կոլտնտեսության գյուղատնտեսն ու դպրոցի դիրեկտորը: Նրանք համոզեցին համագյուղացիներին, որ ես եմ ճիշտը: Հետագա տարիներին արդեն գյուղացիներն իրենք էին խնդրում, որ ես մեղվափեթակները նույնիսկ իրենց տնամերձ այգիներում դնեմ, որովհետև այդ տարի նրանք ավելի շատ էին բերք ստացել:

Իրոք, մեղուների շնորհիվ, խաչաձև փոշոտման ժամանակ, սերմնատվությունը ավելանում է 25—30 տոկոսով, ծառերն ավելի շատ են պտղակալում, պտուղներն ավելի մսալի ու խոշոր են լինում, քան ինքնափոշոտմամբ ստացվածները, բարձրանում են եգիպտացորենի, հնդկացորենի, վուշի, արևածաղկի, շաքարի ճակնդեղի ու բամբակի քանակական ու որակական հատկանիշները:

*ԱՐԱՄԱՅԻՍ ԳԱՍՊԱՐՅԱՆ*
*(մեղվաբույծ)*

# ՊՅՈՒԹԱԳՈՐԱՍ

(մոտ 580—500 մ. թ. ա.)

Պյութագորասի կյանքից մեզ կցկտուր տեղեկություններ են հասել: Հայտնի է, որ Պյութագորասը ծնվել է Սամոս կղզում: Երիտասարդ տարիներին ճանապարհորդել է Եգիպտոս, ապրել է Բաբելոնում, որտեղ քաղդեական քուրմերի մոտ աստղագիտություն և աստղագուշակություն է ուսումնասիրել: Սիցիլիայում հաստատվելուց հետո, հիմնադրել է պյութագորյան դպրոց, որը հետագայում մեծագույն դեր խաղաց մաթեմատիկայի և աստղագիտության զարգացման մեջ:

Պյութագորասին են պատկանում երկրաչափական մի շարք հայտնագործություններ. եռանկյունու ներքին անկյունների գումարը, հարթության բաժանումը կանոնավոր բազմանկյունների, քառակուսի հավասարման երկրաչափական լուծումները և այլն: Երկրաչափական կարևորագույն օրենքներից է «Պյութագորասի թեորեմը»: Այս թեորեմի մասնակի լուծումը հայտնի էր դեռ հին եգիպտացիներին, որոնք շինարարության մեջ օգտագործում էին այսպես կոչված, «եգիպտական եռանկյունին» 3, 4, 5, կողմերով: Նրանք գիտեին, որ նշված եռանկյունին ուղղանկյուն է և գտել էին $3^2+4^2=5^2$ հարաբերակցությունը:

Թե ինչպես է ինքը՝ Պյութագորասը ապացուցել իր թեորեմը, հայտնի չէ: Միայն առասպելներից մեկում ասվում է, որ Պյութագորասը գյուտից հետո աստվածներին իր շնորհակալությունն է հայտնել, 100 ցուլ զոհաբերելով նրանց:

Պյութագորասի ասույթներից.

«Արա միայն ա՛յն, ինչ քեզ չի վշտացնի և որի համար երբեք չես զղջա»:

«Չիմացածդ բանը մի՛ անի: Բայց և իմացիր այն ամենը, ինչ իմանալով դու հանգիստ կապրես քո կյանքը»:

«Սովորիր պա՛րզ կյանքով ապրել, առանց շքեղության»:

«Մի՛ փակի աչքերդ քնելուց առաջ, եթե դեռ չես մտածել անցած օրվա մեջ կատարած բոլոր արարքներիդ մասին»:

«Մի՛ անցնի կշեռքի կողքով (մի խախտի արդարության նըժարը)»:

«Մի՛ նստի բարձի վրա (մի բավարարվի կատարածով)»:

«Մի՛ հյուրընկալի տանիքիդ տակ ծիծեռնակներին (շատախոս և թեթևամիտ մարդկանց)»:

«Մի՛ խառնի կրակը սրով (մի վայրացնի վայրացածներին)»:

# ԽՆԴԻՐՆԵՐ

1. Զարմանալիորեն արագ է տարածվում լուրը: Երբեմն երկու-երեք ժամվա ընթացքում ամբողջ քաղաքը խոսում է մի անցուդարձի մասին, որին ներկա են եղել ընդամենը 1-2 մարդ: Տարօրինակ այդ արագությունը թվում է հանելուկային, սակայն...

Առավոտյան ժամը 8-ին, մայրաքաղաքից, մոտ 30.000 (29,524) բնակչությամբ Համբասկոտ քաղաքն է ժամանում ոմն Կիրակոս, որը բոլորին չափազանց հետաքրքիր լուր է բերել: Քաղաք մտնելուն պես, նա այդ լուրը հայտնում է հանդիպած իր 3 ծանոթին: Ուրեմն, ժամը $8^1/_4$ նորությունը գիտեին ընդամենը 4 մարդ: Երեք ծանոթից ամեն մեկը, ժամանակ չկորցնելով, լսածը հաղորդում է իր 3 ծանոթներին: Ստացվում է, որ կես ժամվա ընթացքում $4+(3\times3)=13$ մարդ արդեն գիտեին բանն ինչումն է: Եթե նորությունն իմացողներից ամեն մեկը $^1/_4$ ժամում լուրը հասցնի հաղորդել ուրիշ 3 հոգու, ուրեմն՝ ժամը $8^3/_4$-ին լուրը կիմանան՝

$13+(3\times\ 9)=\ 40$ բնակիչ,

9-ին՝

$40+(3\times\ 27)=\ 121$ բնակիչ:

Այսպիսով, մի ժամվա ընթացքում 121 բնակիչ ներգրավված կլինի այս պատմության մեջ:

Ժամը քանիսի՞ն ամբողջ քաղաքը «մարսած» կլինի հետաքրքիր լուրը:

2. Այս ժամանցը առաջին մեծ հաջողությունը բերեց ամերիկացի Սեմ Լոյդին: Նկարի միլիոնանոց տիրաժով տպագրությունը Սեմ Լոյդին ո՛չ միայն 10.000 դոլլարի շահույթ բերեց, այլև առաջին քայլն հանդիսացավ մաթեմատիկական գլուխկոտրուկների հանճար և արքա համարվելու ճանապարհին:

Նկարը կետագծերով կտրեք և ստացված երեք մասերը, առանց ծռմռելու տեղադրեք այնպես, որ ձիավորները ճիշտ հեծնեն իրենց ձիերը:



Ա. ՄԱՏՈՒՐՅԱՆ




## ԱՌԱՋԻՆ ԿՈՒՐՍԵՑԻ ՆԱՀԱՊԵՏԸ

Պետար Զամոնիայի 80 տարին վերջերս էր լրացել, և ծերունին, ոչ առանց հիմքի, կարծում էր, որ կյանքի դպրոցն ինքը վաղուց է ավարտել: Սակայն նրա թոռը Սարաևոյի համալսարանում ընդունելության քննություններ հանձնելիս՝ երկրորդ անգամ ձախողվեց... Պապիկը մոլեգնեց և որպեսզի ապացուցի, որ ընդունելության քննություններ հանձնելն այնքան էլ դժվար չէ, ինքը ներկայացավ քննության: Եվ շուտով, ի զարմանս թոռան և հուրախություն իր՝ բացիկ ստացավ. ընդունված եք: Այսպիսով, Պետար Զամոնիան այժմ Հարավսլավիայի, հավանաբար նաև ամբողջ աշխարհի, ամենատարիքավոր ուսանողն է:

## ՀՈՎԱԶՆԵՐԻ ԱՐՏԱՀԱՆՈՒՄ

Արդեն մի քանի տարի անընդհատ Բուդապեշտի կենդանաբանական այգու հովազները առողջ ու լիարժեք սերունդ են տալիս: Բուդապեշտում ծնված առաջին գազանիկները վաճառվեցին Ավստրիային: Այնուհետև հովազների պատվերներ ստացվեցին ֆրանսիական կրկեսներից: Վերջապես, անցած տարվանից բուդապեշտյան հովազներով հետաքրքրվել սկսեցին Ասիայի և Աֆրիկայի որոշ երկրների արգելանոցները:

## Ի՞ՆՉ ԱՐԺԵ ՕԴԸ

Մինչև վերջերս Ֆրանսիայում մեքենաներից հարկ էին վերցնում ըստ շարժիչի հզորության՝ որքան շատ ձիաուժ էր ունենում շարժիչը, այնքան բարձր էր հարկը: Այժմ նոր կարգ է հաստատվել. հարկի չափը կախված է մեքենայից դուրս մղվող չայրված գազերից օդը աղտոտելու չափից: Մեքենան որքան քիչ է աղտոտում միջավայրը, այնքան քիչ է հարկը: Ի վերջո էլեկտրագնացների տերերը ցնծում են:

# ԱԶԲԵՍՏ

*ԿԱՐՈ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Սա մի քար է, որ կարելի է ոլորել, ծալել և նորից ուղղել: Ունի թելաձև կառուցվածք, ոչ մետաղական ծագումով միներալ է:*

*Թեթև մեխանիկական ներգործության դեպքում այն վերածվում է բարակ, երկար և ճկուն թելերի: Խիստ ջերմակայուն է, բարձր ջերմաստիճանի տակ չի այրվում, հետևապես և չի փոխում իր ֆիզիկական հատկությունները: Հունարեն «ազբեստ» նշանակում է չայրվող: Ունի նաև շատ բարձր էլեկտրամեկուսիչ հատկություն:*

*Դեռ 3300 տարի առաջ ազբեստի մասին գիտեին հին հրեաները: Այն համարվել է հրաշք նյութ և օգտագործվել է ինչպես կրոնական ծիսակատարությունների ժամանակ, այնպես էլ կենցաղում:*

*Ազբեստի մասին հորինվել են շատ լեգենդներ: Դրանցից մեկում ասվում է, որ 18-րդ դարում, Ուրալի հայտնի գործարանատեր Ակինֆի Դեմիդովը Պետրոս Առաջինին նվիրում է արծաթափայլ մի գեղեցիկ սփռոց, իսկ թե ինչից էր այն պատրաստված, չի հայտնում: Մի անգամ Պետրոս Առաջինը հրավիրում է մի քանի գործարանատերերի: Ճաշկերույթին ներկա է լինում նաև Դեմիդովը: Նա «պատահաբար» բաժակով գինին և ափսեով յուղը թափում է սփռոցի վրա և կեղտոտում: Հետո լուռ վերցնում է կեղտոտված սփռոցը և գցում ուղիղ այրվող բուխարու մեջ: Որոշ ժամանակ անց հանում է կրակի միջից և նորից փռում սեղանին: Սփռոցը մաքրվել էր և շողշողում էր առաջվա պես:*

*Կրակով «մաքրվող» գործվածքը հայտնի էր չինացիներին շատ վաղուց: Չին փիլիսոփա Մեցույը դեռ 2500 տարի առաջ, գրել է. «Չայրվող գործվածքը մաքրելու համար պետք է գցել կրակի մեջ»:*

*Ազբեստի մասին Եվրոպայում առաջին անգամ լըսել են 13-րդ դարում, հայտնի ճանապարհորդ Մարկո Պոլոյից, բայց սխալ մեկնաբանությամբ: Ըստ այդ մեկնաբանության, Գոբի անապատի լեռնային շրջաններում կա կրակի մեջ ապրող մի կենդանի, որի բրդից կարելի է ստանալ չայրվող գործվածք: Ասվում էր նաև, որ ազբեստը ստացվում է Հնդկաստանի անապատներում աճող բույսի թելերից:*

*Միայն 17-րդ դարում ապացուցվեց, որ ազբեստն ունի հանքային ծագում: Ռուսաստանում ազբեստը հայտնի դարձավ 18-րդ դարի սկզբին, երբ Տագիլ գետի մոտակայքում (Ուրալ) հայտնաբերվեցին ազբեստով հարուստ հանքաշերտեր: Այդ վայրերում բնակվող գեղջկուհիները ազբեստի թելերից գործում էին նուրբ անձեռոցիկներ, ժանյակներ, տոպրակներ, որոնք իրենց նրբությամբ ու որակով համարյա չէին զիջում իտալական ազբեստի հայտնի գործվածքներին:*

*Մեր օրերում ազբեստի խրիզոտիլ տեսակից, որն ունի շատ ավելի բարձր հրակայունություն, պատրաստվում են հակահրդեհային կոստյումներ, շոգեմեքենաներում օգտագործվող ջերմամեկուսիչ նյութեր, էլեկտրակաբելների մեկուսիչներ, ավտոմեքենայի արգելակային ժապավեններ և այլն: Ժողովրդական տնտեսության բազմաթիվ բնագավառներում օգտագործվող վառելիքը տնտեսելու շատ արդյունավետ միջոց է ազբեստի ջերմամեկուսիչների օգտագործումը:*



# ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆ

Սովետահայ կերպարվեստը մեծ կորուստ ունեցավ: Կյանքից անժամանակ հեռացավ «Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերի հնագույն աշխատակից, տաղանդավոր նկարիչ, արվեստի փառավոր գործիչ Սուրեն Ստեփանյանը: Նա ոչ միայն մեր ամսագրի առաջին մրցանակակիրներից էր և մանուկների սիրելի բարեկամը, այլև մեր հանրապետության գրքի ձևավորման ականավոր վարպետներից, բազմաշնորհ արվեստագետ, բարձր ու ազնիվ քաղաքացի:

Ահա թե ի՛նչ է գրել Սուրեն Ստեփանյանը մի քանի տարի առաջ մեր ամսագրի ընթերցողներին.

«Ամենալավը, որ մարդ մարդուն կարող է ցանկալ՝ սերն և պատանությունն է, որը դուք ունեք:

Ունեք նաև գեղեցիկ ու թռչուն երազանքներ:

Ինձ մնում է ցանկալ ձեզ կորով և համառություն՝ ձեր շողուն անուրջներն իրականություն դարձնելու երկար և ոչ միշտ հարթ ճանապարհին»:

*Ազբեստի բարակ, նուրբ թելերը օրգանական խեժերի հետ մամլելիս ստացվում են ազբեստապլաստիկներ, որոնք օգտագործվում են շենքերի հատակները և պատերը երեսապատելու համար, որպես ձայնի և ջերմության լավ մեկուսիչներ: Ազբեստապլաստիկների մի քանի տեսակներ կիրառվում են էլեկտրասարքունաբերության, մեքենաշինության, ինքնաթիռաշինության, տիեզերանավերի, արհեստական արբանյակների և ղեկավարվող արկերի արտադրություններում:*

*Ազբոցեմենտի թերթավոր և ալիքաձև սալիկները կոչվում են ազբոշիֆերներ: Ազբոշիֆերները երկար տարիներ դիմանում են օդի և մթնոլորտային տեղումների ազդեցությանը, առանց էական փոփոխությունների, դրանցով ծածկում են շենքերի տանիքները: Ազբոցեմենտից պատրաստում են նաև խողովակներ, որոնք թեթև են և էժան: Իսկ վերջին տարիները ազբոցեմենտից արտադրվում են հավաքովի պանելներ և շենքի արտաքին պատեր:*

*Մեր հանրապետությունում ազբոցեմենտե իրեր արտադրում է Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատը, որը ազբեստը ստանում է Ուրալի Ազբեստ քաղաքից:*

Լույս է տեսնում 1928 թվականից

№ 4 ապրիլ 1977 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 04304: Պատվեր 407: Տպաքանակ՝ 55106: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 11/IV 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 15 Կ.

ԻՆԴԵՔՍ 77806



ՆՈՐԻԿ ՍԱՀԱԿՅԱՆ
Սպիտակի շրջան, գ. Թափանլի, 13 տ.



ԱՇՈՏ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ
Լենինական, 11 տ.



ՎԵՆԵՐԱ ԱՍՈՅԱՆ
Երևան, 11 տ.



ԼՈՒՍԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ
Ազիզբեկովի շրջ., գ. Մարտիրոս. 11 տ.



ԱՐՄՎԻԿ ՆԵՐԻԿՅԱՆ
Վրաց. ՍՍՀ, գ. Ցխինվալի, 11 տ.



ՄԱՆՈՒՇԱԿ ՊՈՂՈՍՅԱՆ
Էջմիածնի շրջ., գ. Այգեշատ, 13 տ.